ԱԶԳԱՅԻՆ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ

ԿԵ.

Ա.

ՄԻՋՆԱԴԱՐԵԱՆ

# ԱԶԳԱՅԻՆ ՏԱՂԱՉԱՓՈՒԹԻՒՆ

ՌԱՄԿԱԽԱՌՆ

ԳՐԵՑ

Հ. ՂԵՒՈՆԴ Վ. ՅՈՎՆԱՆԵԱՆ

---

Բ.

# ՅՈՎՆԱԹԱՆ ՆԱՂԱՇ

ԵՒ ՆԱՂԱՇ ՅՈՎՆԱԹԱՆԵԱՆՔ

ԳՐԵՑ

Հ. ՆԵՐՍԷՍ ԱԿԻՆԵԱՆ

ՎԻԵՆՆԱ

ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ

1911.

# ՄԻՋՆԱԴԱՐԵԱՆ ՀԱՅ ՏԱՂԱՍԱՑՔ

Բ.

## ՄԻՋՆԱԴԱՐԵԱՆ ԱԶԳԱՅԻՆ ՏԱՂԱՉԱՓՈՒԹԻՒՆ ՌԱՄԿԱԽԱՌՆ

## ԵՒ ՅՈՎՆԱԹԱՆ ՆԱՂԱՇ ԵՒ ՆԱՂԱՇ ՅՈՎՆԱԹԱՆԵԱՆՔ

---

ԱԶԳԱՅԻՆ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ

ԿԵ·

Ա.

ՄԻՋՆԱԴԱՐԵԱՆ

# ԱԶԳԱՅԻՆ ՏԱՂԱՉԱՓՈՒԹԻՒՆ

ՌԱՄԿԱԽԱՌՆ

---

Բ.

# ՅՈՎՆԱԹԱՆ ՆԱՂԱՇ

ԵՒ ՆԱՂԱՇ ՅՈՎՆԱԹԱՆԵԱՆՔ

ՎԻԵՆՆԱ

ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ

1911.

Ա.

## ՄԻՋՆԱԴԱՐԵԱՆ

# ԱԶԳԱՅԻՆ ՏԱՂԱՉԱՓՈՒԹԻՒՆ

ՌԱՄԿԱԽԱՌՆ

ԳՐԵՑ

Հ. ՂԵՒՈՆԴ Վ. ՅՈՎՆԱՆԵԱՆ

ՄԽԻԹ. ՈՒԽՏԷՆ

ՎԻԵՆՆԱ

ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ

1911.

# ԱԶԴ

Աշխատութիւնս որոշուած էր սկզբնաբար Հետա-զօտութիւնք Նախնեաց ուսմկօրէնի գործոյն մէկ գլուխը կազմել. բայց ապա լաւագոյն համարուած է առանձին հրատարակել. եւ իբրեւ այսպիսի 1895ին սկսած է մաս առ մաս լոյս տեսնել Հանդէս Ամսօրեայի մէջ (1895. էջ 305-310, 1896, էջ 52-55, 115-119): Գործն պիտի բաղկանար ըստ հեղինակի ծրագրին, կրկին բաժիններէ՝ "Ա. Տաղաչափք եւ տաղք". Բ. Լեզու եւ Քերականութիւն:

Թէեւ հեղինակը գործոյն սկիզբը ծանուցած էր ("ՀԱ.", 1895. էջ 305) թէ ձեռագիրը արդէն աւարտած է, բայց որչափ կ'երեւայ ո՛չ վերջնական խմբագրութիւնը, որովհետեւ երրորդ յօդուածով ընդհատելէ ետքը (1896 Մարտ) մէջ մ'ալ ձեռք առնուած չէ մինչեւ ալեզարդ հօրը անակնկալ մահը († 1897):

Դժբախտաբար այն օրէն ի վեր գործն մնաց անաւարտ, եւ արտատպուած երեք թերթերն անկենդանութեան դատապարտուեցան: Ուզելով կենդանացնել մեծանուն հանգուցելոյն գեղեցիկ ձեռնարկութիւնը, թղթատեցի թողուցած ձեռագիրները մի առ մի, յուսով թէ կը յաջողիմ գտնել գործոյն մնացորդը: Բայց ի զուր:

Կար, այո՛, գործոյն անձեւ ընդհանուր կմախքը, ուսկից սակայն կարելի չէր յառաջ բերել ամբողջութիւն մը, մանաւանդ Բ. բաժնին: Բայց այս կմախքի վրայէն այնչափ ալ դժուարին չէր լրացնել առաջին

*քաժինը, զոր եւ փորձեցի ամբողջացնել, այնպէս որ իւր համառօտ ծրագրին մէջ կարելի է զայն այժմ ամբողջութիւն նկատել:*

*Յուսով ենք թէ Նախնեաց ռամկօրէնով հետաքրքրուողները պիտի ընդունին զայն սիրով եւ պիտի գտնեն հոն շահեկան դիտողութիւններ:*

*Գործոյս կցած ենք մեր ուսումնասիրութիւնը Յովնաթան Նաղաշի եւ Նաղաշ Յովնաթանեանց մասին, որ նախնաբար լոյս տեսած է Հանդիսի մէջ (1911, Թ. 4–7):*

Հ. Ն. Ա.

# ՑԱՆԿ

*ՄԻՋԻՆԴԱՐԵԱՆ*

# *ԱԶԳԱՅԻՆ ՏԱՂԱՉԱՓՈՒԹԻՒՆ*

*ՌԱՄԿԱԽԱՌՆ*

---

## ՆԱԽԱԳԻՏԵԼԻՔ

*Չափաբերական կամ ոտանաւոր գրուածոց կողմանէ Ռամկօրէն գրականութիւնը չի կրնար մրցութեան ելլել արեւելեան գլխաւոր ազգաց գրականութեան հետ, չունենալով այն ազգաց պէս ականաւոր հեղինակներ՝ որ ընդարձակ չափաբերական քերթուածովք հռչակ հանած ըլլան։ Սակայն կան նաեւ առ մեզ ոչ սակաւ Գրիչք՝ որ ի միջին դարս ռամկօրէն կամ ռամկախառն լեզուաւ ոտանաւոր մանր գրուածք թողած են[1]։*

*Այս ոտանաւոր մանր գրութիւնք մեծաւ մասամբ հաւաքեալ կը գտնուին ձեռագիր Տաղարանաց, Ոսկեփորիկներու եւ այլ նման հաւաքածոյից՝ մինչեւ նաեւ Մաշտոցաց մէջ, — վերջիններն սովորաբար զայնպիսիս բովանդակելով՝ որ իբրեւ Ողբք մեռելոց կը գործածուէին՝ Մեռելաթաղի ամբողջացուցիչ մասն համարուելով։ — Ասոնցմէ զատ՝ կան նաեւ ժո-*

---

1 Հետաքննիք կարող են այս Տաղաչափից անուանքը գտնել առաւելապէս ի Յուշիկք Հայրենեաց (Հտ. Բ. Գլ. ԺԹ.) ուր ընդարձակ կը խօսուի ազգային Վիպասանութեան վրայ, անգիր ժամանակներէ (Գողթան երգերէն) մինչեւ վերջին ատենները։ (Տես առանձինն Հտծ Զ. էջ 122—127։ — Տես նաեւ Պատմ. Հայ. Դպր. Հտ. Բ. էջ 261—273։)

ժողովրդական (անգիր) Երգեր, որ շատ տարա-
ծեալ են ի զանազան գաւառս, եւ սերընդէ
սերունդ կ'անցնին աւանդութեամբ եւ հետ-
զհետէ կ'աճին, թէեւ ինչպէս բնական է՝ ան-
շուշտ փոխուելով։

Հայերէն տպագրութեան առաջին տարի-
ներէն սկսեալ՝ բայց առաւելապէս ներկայ դա-
րուս մէջ, այս տաղաչափական գրուածներէն ոչ
սակաւք հրատարակուած են եւ օրըստօրէ կը
հրատարակուին՝ թէ՛ առանձին տետրակներով եւ
թէ՛ մանաւանդ պարբերականաց մէջ։ Գլխաւ-
որաբար Բողոմովեցն իւր գրեթէ յիսնամեայ ըն-
թացից մէջ մեծ յաճախութեամբ հրատարա-
կած է այսպիսի տաղեր եւ ոչ սակաւ ժողովըր-
դական երգեր։ Ա՛յլ պարբերականաց կամ գրոց
մէջ ալ երբեմն կը տեսնուին այսպիսի չափա-
բերականք, բաց յայլոց՝ Սրուանձտեանց Գեր.
եպիսկոպոսին հրատարակութեանց, մանաւանդ
Մանանայի եւ Հառով-Նոփովլի մէջ բազմաթիւ
տաղեր, առաջնոյն մէջ՝ աւելի գրաւոր ռամկա-
խառն կտորներ, իսկ երկրորդին մէջ՝ ժողովըր-
դական անգիր երգեր մեծաւ մասամբ գաւա-
ռական բարբառներով։

Ռամկական գրականութեան հասակակից
է բուն ռամկական տաղաչափութիւնն։ — Տե-
սած ենք (Հետազ. 11) թէ ամէնէն յառաջ
Շնորհալի Հայրապետն ի նոյն ձեռնարկած է իւր
Առակներովն (Հանելուկներովն), որոց մասին
արդէն երկարագոյն խօսած ենք։ — Թէպէտ
իրմէ կանխագոյն ժամանակներէն եւս մնացած

են քանի մի ոտանաւոր գրութիւնք, որ նուազ կամ աւելի չափով խառնեալ են ռամկականութեամբ. բայց հնար չէ կարծեմ զանոնք ռամկական տաղաչափութիւն կոչել, այլ կը մնան միշտ ռամկախառն գրաբար։ Եւ արդարեւ ո՞վ կարող է ռամկօրէն անուանել ի Ժ. դարու Գրիգորի Նարեկացւոյ գրած ընտիր տաղերէն մի քանին, անոնց մէջ գտնուող սակաւ ռամկականութեանց պատճառաւ[1]։ Եւ ոչ իսկ պատշաճ կը համարինք նոյն անունը տալ ի ԺԱ. դարու Գրիգորի Մագիստրոսի հապճեպով յօրինած հազարտողեան անշուք գրութեան, յորում տեսնուած ռամկականութեանց նայելով, հնար է՝ այս ռամկախառն կոչել, այլ ոչ աւելի ինչ[2]։

* * *

Նախընթաց տողերուն մէջ Գրիգոր Մագիստրոսի յիշատակութիւնն առիթ կու տայ մեզի յառաջ բերել յաջորդ տեղեկութիւնն,

---

1 Հրատարակեալները տես ի Մատենագրութեան Գրիգորի Նարեկայ Վանից Վանականի, Վենետիկ, 1827, էջ 376—386։ Տես նաեւ Հետազօտութեանցս սկիզբներն (էջ 25, 26) այն տաղերուն երկուքէն բերուած գեղեցիկ հատակոտորները։

2 Ահա քանի մի օրինակ. Թէ երթայք մօտք = մօտանէք. լսեցին, լսեա, յսեալ, մտաւ, աճեալ, արգելէին, չօգային։ Մի վախէք։ Աճել հետ հասակին, յետ նայեցաւ, երկնից վերեւ, յաւուր վերջի տօնին։ Կապէր իւրն զէնջակ։ Չէր փոյթ վասն այսոր գանձապահին։ Ակահ այնոր եղէն։ Զիս մէն թողուլ։ Ընդ իս ու սուրբ Հոգին. զքողն ու զգօտին. զիմ բանն ու զՈրդին. հաւ խօսեցաւ ու նա յիշեաց։ Բանն կապած է հաւատորին. խօսքն խեղդած՝ կոծ երեսին։ Սուտ եմ զըմբաղած ի կենցաղումս։ Զաչերն փորէին։ Անդարձանի = կտակներ, անուանանին, երեւմանին, կատարմանին . . . թող՝ մատենանի, խորհրդանի . . ., որք գրեթէ ամէն էջի մէջ կը տեսնուին։

որմէ կը տեսնուի թէ ինչ մեծ ազդեցութիւն ունեցած է նոյն բազմահմուտ Մատենագիրն ռամկօրէն՝ մանաւանդ թէ ընդհանրապէս հայերէն միջին եւ նոր Ոտանաւորի կազմակերպութեան։

«... ԺԱ. դարու մէջ կը սկսի Ցանգաւոր թուական տաղաչափութիւնը Արաբացւոց նմանութեամբ, բայց առանց անոնց ամանակի ելեւէջքին, որ արաբական տաղաչափութեան գլխաւոր զարդն ու հոգին է (երես 404)*. վասն զի հայերէն բառերու վրայ երկարութիւն ու սղութիւն չէր դիտուեր։ Այս նորութիւնս, այս եկամուտ արուեստը՝ թէեւ պատուաստիւ եւ ոչ ի բնէ ազգային, քիչ ատենուան մէջ բուն ազգային սովորական տաղաչափութեան տեղ կ'անցնի, ինչպէս ընդհանուր գրաւոր աշխարհի՝ նոյնպէս Հայոց երկրին ալ, որ մանաւանդ պարծանօք մը գրկած է նոյնը։ Ա՛լ անկէ ետեւ բնական էր՝ որ նոյն ընդհանրականութիւնը՝ դրացի (արեւելեան եւ արեւմտեան) ազգաց ընթացակից Հայուն ալ տիրող ըլլալ տար այս Ցանգաւոր թուականը, որուն առջեւ սկսէր ցայն վայր ի գործածութեան եղած Չափականը տեղի տալ[1]։

---

* Քնն. Քերականութեան, ուր այսպէս կը գրուի. «Կը կարծուի թէ Արաբացւոց Լոմպարդներուն ու Գոֆիոններուն նմանութիւնն եղած ըլլայ միջին դարու եւրոպական (Տրուփոններու) յանգաւոր Տաղաչափութեան առաջնորդը։ Սակայն հարկ է ճանչնալ թէ արաբականը՝ թէեւ իրօք յանգական է, բայց գլխաւորաբար մտադիր է ամանակի եւ կանոնաւոր չեշտի ելեւէջքին. որով յանգէն աւելի՝ իր երաժշտական շարժումը նախանձելի պէտք էր ըլլալ»։

1 Ինչպէս ասութեան կերպէն ակնյայտնի կ'երեւայ

„Յանգական Տաղաչափութեան կամ մանաւանդ ճիշդ Թուականին՝ գլխաւոր արդիւնաւորներն եղած են Գր. Մագիստրոս, (որուն համար մեր մէջը Հայր Արաբականին ճանչցուած է,) եւ անկէ դար մը ետքը Ն. Շնորհալին՝ իր քերթուածներուն շատութեամբն ու չափուց (իմա՝ ոտից) պէսպիսութեամբը„: (Քնն. քերակ. էջ 426:)

* * *

Թէպէտ կ'ենթադրենք որ ընթերցողացս շատերը տեղեակ են ոտանաւորի կազմակերպութեան օրինաց. սակայն եւ այնպէս աւելորդ չենք համարիր դնել աստ անոնց համառօտ բովանդակութիւնն, որպէս զի կարենանք դիւրաւ հետազօտել անոնց կիրարկութիւնն ի ռամկօրէն ոտանաւորս:

**Թուական** եւ **Չափական**՝ իրարմէ տարբեր երկու տեսակ ոտանաւորի անուանք են: — **Թուական** կը կոչուի այն տեսակն՝ որոյ իւրաքանչիւր տողն որոշ թուով **վանկ** կամ **ոտք** ունենալու է: Այս տեսակին կը տրուի նաեւ **Յանգաւոր** (Յանգաւոր Թուական) անունն, եթէ ինչպէս սովորաբար կ'ըլլայ՝ երկու երեք կամ աւելի իրարու յաջորդող տողերու յետին ծայրը միեւնոյն յանգն ունենայ, որ է ասել՝ միեւնոյն գրերով կամ միեւնոյն հնչմամբ վերջաւորի: — Իսկ

---

Հեղինակն այս վերջին խօսքովն այն կ'ակնարկէ թէ առ մեզ եւս կային ի հին ժամանակաց զանազան տեսակ չափական տաղեր եւ երգեր, զոր եւ աստ անդ բացայայտ կը գրէ: (Տես մանաւանդ յէջսն 405—411:)

Չափական կ՚անուանուի այն տեսակն, որոյ՝ փո-
խանակ վանկերու Թիւն համրուելու՝ կը չափուի
ժամանակն, այս ինքն՝ անոնց երկարութիւնն ու
սղութիւնը[1]:

Ինչպէս այս համառօտութենէն կ՚երեւայ՝
երկու տեսակ ոտանաւորացս կազմակերպութիւնն
իրարմէ տարբեր սկզբանց վրայ հիմնեալ է:
Միայն գլխաւոր կէտ մի մէջ երկուքն իրարու
հետ ըստ մասին կը միաբանին, որ է՝ Հատածի
(césureի) կէտն, եւ կը կայանայ իւրաքանչիւր
տողն անդամատելով՝ երկու կամ աւելի հաւ-
ասար կամ անհաւասար անդամոց հատանելու
վրայ: Սակայն յայսմ միաբանութեան եւս կայ
զանազանութիւն. վասն զի անդամատելն իրարմէ
տարբեր կերպով կը գործադրուի: — Չափա-
կանին Հատածը մեր սահմանէն դուրս է: Իսկ
Թուականին Հատածն յայնմ կը կայանայ, որ
նոյնպիսի ոտանաւոր յօրինողն, — բաց ի վան-
կերու Թուէն եւ յանգերու նոյնութենէն՝ —
հոգ տանի նաեւ տողերն ըստ պատշաճի եւ ըստ
մասնական կանոնաց առոգանութեան անդամա-
տել՝ երբ տողն հնգէն աւելի վանկ կամ ոտք
ունենայ: — Այսպէս՝ 1. Վանկերու Թուոյն
ճշդութիւնն, 2. Յանգերու նոյնութիւնն, 3. Հա-

---

[1] Յասացելոցս ինքնին կը հետեւի թէ միայն Թուա-
կան տեսակին կը պատշաճի յատկապէս Ոտանաւոր կոչումն,
եւ Չափականին եւեթ՝ Չափաբերական, Տաղաչափական,
Չափածոյ կամ Չափաւ կամ Չափական բան եւ քերթուած
բացատրութիւնք: Սակայն այժմ սովորական եղած է եր-
կու տեսակին ալ անխտիր միեւնոյն անունները տալ: —
Գիտնալու է նաեւ թէ Չափական քերթողութիւնն հին
լեզուաց սովորական է, իսկ Թուականն՝ նոր լեզուաց:

տածի պատշաճականութիւնն կամ տողերուն կանոնաւոր անդամատութիւնն՝ թուական ոտանաւորի նիւթական կամ մեքենական կազմակերպութեան երեք պահանջմունքն են, որոց ճիշդ գործադրութենէն կախում ունի նոյն տեսակ ոտանաւորաց կանոնաւորութիւնն։

---

# Ա.

## Տաղաչափք եւ տաղք։

---

### Ա. Վարդան Հայկազն։

Մագիստրոսի օրինակին հետեւողութեամբ շինուած քերթուածներուն հնագոյնն է՝ Նոր ժամանակներն յերեւան ելած ընդարձակ (900ի մօտ տողիք) Գերեզմանական տաղն ի Գրիգոր Վկայասէր, զոր Շնորհալւոյն Առակաց յօրինուելէն իբր յիսուն վաթսուն տարի յառաջ՝ ԺԲ. դարուն սկիզբներն՝ յօրինած է եօթն դարէ աւելի անուամբ եւ գրութեամբ անծանօթ մնացած քերթողս։

Մեր Հետազօտութեանց Նախաշաւղին մէջ (էջ 26) համառօտիւ յիշատակելով սոյն քերթուածն, ռամկախառն գրաբարի կարգ դասած ենք, ըստ սկզբանց զոր կանխագոյն բացատրած էինք նկատմամբ զանազանութեան բուն ռամկօրէն գրուածոց եւ ռամկախառն գրութեանց։ (Անդ, էջ 16, 17։) Յարգելով հանդերձ այս տաղս սկզբնաբար հրատարակողներուն կար-

ծիքն, որ քերթուածոյս ոճն ու լեզուն ռամկա-
կան կամ աշխարհաբար կը կոչեն, (տես Բազ-
մավէպ, 1873, էջ 264, եւ Պատմ. Հայ. Դպր.
էջ 678,) որոց եւ մասամբ իւիք չենք կարող
զլանալ մեր հաւանութիւնն, — մենք հարկ կը
համարինք աստ եւս հաստատուն պահել մեր
յառաջուան կարծիքն: Վասն զի եթէ Գերեզ-
մանական տաղս իբրեւ բուն ռամկօրէն նկա-
տէինք, կը ստիպուէինք ոչ միայն Գրիգորի Նարե-
կացւոյ եւ Մագիստրոսի՝ այլ նաեւ զայն քեր-
թուածս եւս ռամկօրէն կոչել, զոր ցայժմ ոչ ոք
համարձակած է ռամկաբար իսկ անուանել՝ թող
թէ ռամկօրէն, այս վերջնոց մէջ յաճախ տես-
նուած ռամկականութիւնքն լոկ «ժողովրդական ազա-
տութիւն» կոչելով:

Զիարդ եւ իցէ, թէպէտ ռամկախառն
գրաբար համարուի Գերեզմանական տաղս՝ թէ-
պէտ բուն ռամկօրէն, պատշաճ է որ առաջին
տեղին տանք, ոչ միայն ի պատիւ հնութեանն,
այլ նաեւ ներքին առաւելութեանց համար: Կայ
նաեւ պարագայ մի որ կը ստիպէ զայս տաղս
դասել ի գլուխ միջինդարեան տաղաչափու-
թեանց: Քերթուածս է, ինչպէս վերագոյն
ըսուեցաւ, Մագիստրոսի առ Հայս մուծած ոտա-
նաւորի տեսակին համեմատ շինուածներուն հնա-
գոյնն: Բաց աստի՝ շինուած է ի պատիւ անոր
հարազատ որդւոյն, որ հռչակաւոր Գրագէտ-
Իշխանիս մահուանէն († 1058) քանի մի տարի
ետեւ (1065ին) Կաթողիկոս ընտրուելով, անոր
մահուան վրայ 47 տարի անցած († 1105)

յերկնաւորս փոխուած է, որ արդարեւ զարմա-
նալի զուգադիպութիւն կրնայ համարուիլ։

Յորժամ ըղձիւքըս ժողովեմ
Ու ի քննութեան բան պարապեմ,
Յանկարծ զիմոյս աղէտ յիշեմ
Յառաջ ու ի վերջ՝ զոր ճանաչեմ։ . . .
Ափ ի բերան համակ պահեմ,
Զողբահամբոյր բանն արգիլեմ.
Եւ յանձն առնուլ զայն չըկարեմ,
Թէ ու ի կատարըն չըքովեմ։
Դարձեալ ի լուռ կալով չուժեմ.
Դադար չըտայ ու ես չհամբերեմ.
Թէ ու պակաս՝ բայց զոր կարեմ
Զայն ծայրաքաղ ի լուր ածեմ։
Եւ զբանաստեղծքըն յորդորեմ,
Հետ իմ յաւելըն յօժարեմ։
Յողբոց հանդէսըս հրաւիրեմ
Զմարգարէից զխօսն աւանդեմ.
Եւ զգուժաբերսըն գումարեմ,
Ըղձայնարկու կանայս կոչեմ.
Անդ ի Հայոց սուգ ժամանեմ,
Եւ զՀոգեւոր տէր աւաղեմ։
Զեկեղեցւոյ լաց ծաւալեմ,
Զիւր մերկութիւնըն ցուցանեմ.
Յետ գերութեանցն անգին ասեմ
Տիրոջ մահովս այլ սասանեմ.
Զհովիւն եւ զհօտն արտասուեմ
Սակաւ մի բանք հատուցանեմ։ . . .

Բայց բանս չէ իմ բաւելի,
Ոչ գիտութեանս ույժ զօրալի,
Զամենագովըն գովելի,
Կամ Տաղ ասել գերեզմանի։
Մովսէս պիտէր Խորենացի,
Քերթողահայրըն կենդանի.
Իմաստութեամբըն անչափելի,
Զերդ նա հոգեւոր տուն եւ տեղի։
Կամ յընկերացն իւր նազելի
Բանիւք հզօրքըն ի հանդիսի.
Յորոց անուանցն էին յահի
Յունաց ճարտարքըն եւ յերկիւղի։ . . .
Բայց է՞ր չյիշեմ զոր ի մօտի
Դեռ յերեկեան ժամանակի.

Գագիկ պիտէր Բագրատունի
Ու Ատրներսեհ Բագրեւանդցի,
Իւր պերճ բանիւքն էր պանծալի
Զափովք տաղի Հոմերոսի.
Դրուատ երգել բան տէրունի
Աշխարհալոյս որդւոյն շիրմի:
Կամ հոմանունն իւր սքանչելի
Փիլիսոփայն Նարեկացի.
Զայն հանճարեղն ես ուզէի
Եւ ինձ ի յօգըն կոչէի:
Զմեր շատ աղէտըս գըրէի
Ու ապագայիցըն թողուի: . . .

---

Բ. Խաչատուր աշակերտ Ն. Լամբրոնացւոյ:

Միեւնոյն ԺԲ. դարուն վերջերէն ալ պահուած է ա՛յլ հարիւրտողեան տաղ մի գրեթէ նախընթացին ոճովը, զոր Ներսեսի Լամբրոնացւոյ մահուան († 1198) առթիւ յօրինած է իւր Խաչատուր աշակերտն ու սպասաւորն: Ահաւասիկ նոյն տաղն եւս՝ սակաւ մի համառօտեալ:

. . . Ե՛կ առաքեալըդ Տարօնացի,
'ի ձա՛ռ ամփոփէ զբանդ որ լսեցի.
Ե՛կ Աթանաս լալոյս ձայնակից,
Բաներս քո են պատարագի:
Բայց իմ հսկող Տէրըն չերեւի,
Ոչ մեկնըւի 'ւ ոչ բացայայտի.
Ոչ ա՛յլ պայծառ քարոզն ասուի,
Ոչ ա՛յլ նման քեզ Տէր գըտանի:
Ոչ ի քո բանք այլ ոք տոչորի,
Ոչ ա՛յլ հսկող թեւքըդ տարածի.
Ոչ ա՛յլ անքուն ակըն բոլորի.
Ոչ ա՛յլ հեղեղ արտասունքն թափի.
Անտանելի հեծն ա՛յլ չլըսի:
Անբաւ հառաչն ա՛յլ չերեւի: . . .

Իմ Տէրն արթուն էր յամէն տեղի,
Կիրթ էր ու վարժ ամէն իմաստի.
Կենօքն սուրբ էր եւ ոչ քո պիտի,
Վարուքն անբիծ նըման Մովսիսի.

Սրտիւն ողորմ նըման Պաւղոսի,
Աղքատասէր նըման Յիսուսի։
Ներսէս պսակ էր յեկեղեցի,
Զարթուցանէր զամէնն ի բարի.
Ներսէս անաչառ ծուլիցն ի տեղի,
Հեզ եւ հանդարտ արթնոցն ի բարի.
Ներսէս արթուն էր գէմ գիշերի,
Հանէր ի գլուխ զցայգն ի կարգի.
Հետ սահմանէր զկարգն ի տեղի,
Հետ խոկալով գրէր գրուի.
Երբ առաւօտ լինէր ցերեկի,
Սկիզբն դնէր նա պատարագի։

Ներսէս ցասումն էր ընդդէմ ախտից,
Զար խորհրդոց չիտայր նա տեղի.
Բայց զուարթուն էր ի պատարագի,
Հեշտ եւ կամակ եղբարցն ամէնի.
Ներսէս աղբիւր անցամաքելի,
Ունէր ի գլուխն ի յիւր գովելի.
Հետ տոչորէր յաղագս ամէնի,
Հետ արտասուէր ի պատարագի.
Ներսէս վստահ էր ի սէրն Յիսուսի,
Մեղաւորաց տայր զեկեղեցի.
Ցիշէր ըզբանըն մեծ տէրունի,
Թէ Ես եկի վանց մեղաւորի։
Ներսէս այրեաց լինէր խնամածու,
Որբոցն հեշտ տեղի խօսելոյ,
Ունեւորացն օրինակ բարոյ,
Զունեւորացն էր տուն կենալոյ։

Աւա՜ղ մտացն որ դադարեցաւ
Աւա՜ղ գրչին որ խոպանեցաւ,
Աւա՜ղ բանին որ պակասեցաւ,
Աւա՜ղ տեսոյն որ թառամեցաւ,
Աւա՜ղ բառին որ նուազեցաւ,
Աւա՜ղ գերեացս որ որբ մնացաք։

Դու, Տէր, գըտար որում ցանկացար,
Դու, Տէր, հասար ում կարօտացար,
Դու, Տէր, առեր զոր վաստակեցեր,
Դու, Տէր, տեսար որում ջանացար,
Դու, Տէր, տուար ում անուանեցար,
Դու, Տէր. հանգեար զի աշխատեցար։

Ես աղաչեմ զիմ Տէրըդ բարի,
Զեռաց սընունդ ծառայս քո գերէ,

Որ զայս յոլով բանս գրեցի։
Գիտեմ որ մերձ կաս այժմ Յիսուսի,
Ծունըր կրկնեա վասն իմ ցանկալի.
Տուր աղաչանս ինձ աղերսալի՝
Դառնալ ի հող։ Ինձ կեանք չպիտի։

(Ձեռագիր Մոնդրինիս. Թ. 7. եւ այլուր։)

---

Իբրեւ Շնորհալւոյն ռամկօրէն Առակաց նախընթաց եւ հետեւորդ ցոլացմունք կրնան նկատուիլ Վարդանայ եւ Խաչատրոյ տաղերն։ Նոյն միջոցներէն չկան մեզի ծանօթ այլ եւս ռամկօրէն կամ ռամկախառն ոտանաւոր գրութիւնք։ Այսպիսեաց բուն սկզբնաւորութեան ժամանակ կրնայ համարուիլ ԺԳ. դարն, յորում երեւցած են քանի մի տաղաչափք, որոց թիւն օրըստօրէ աճելով՝ շարունակուած է մինչեւ ԺԷ. դար։ Թող երկու յետին դարուց մէջ գրողներն, որոց լեզուն՝ թէեւ միշտ նախնեաց ռամկօրէնին գլխաւոր յատկութիւնքն ունի, սակայն եւ այժմու ռամկօրէնին շատ կը մօտենայ։

Վերջին չորս (ԺԳ.—ԺԷ.) դարերէն մեզի հասած ոտանաւոր գրութիւնք հարիւրաւորներով կրնան համրուիլ, որք մեծաւ մասամբ հեղինակն ալ կը ծանուցանեն՝ հասարակօրէն տողերուն կամ տներուն սկզբնագրերովն իւրաքանչիւրին անունը ձեւացընելով, շատ անգամ ալ տաղին մէջն կամ վերջն իրօք դնելով։ Մենք հազիւ քանի մի ընտրելագոյններն յառաջ պիտի բերենք առնցմէ։ Վասն զի մեր յատուկ նպատակն ըլլալով ոչ եթէ հայ բանաստեղծու-

*թեան վրայ խօսիլ, այլ լոկ ուամկօրէն լեզուի տեսակէտէն զբաղիլ՝ ինչպէս արձակ՝ նոյնպէս ոտանաւոր գրութեանց քննութեան, ի հարկէ այնպիսի օրինակներ ընտրելու ենք, որ այս վերջին հայեցուածով կարեւորութիւն ունենան։ Այսպէս՝ մեր շրջանէն դուրս կը մնան ոչ միայն այն տաղաչափութիւնք որ գրեթէ զուտ գրաբար են, այլ նաեւ այն ուամկականք որ բոլորովին անշուք են եւ լեզուի հայեցմամբ զուրկ ամէն վայելչութենէ։ Եթէ ասոնց վրայ յաւելունք նաեւ զայնպիսիս՝ զոր զանազան ներքին եւ արտաքին նկատմունք (կ'ուզենք ըսել՝ անոնց նիւթն ու ժամանակաց հանգամանքն) այնչափ յարմար չեն ցուցըներ հրատարակութեան, — կարծեմ լիով կ'արդարանայ յառաջ բերելու օրինակացս նուազութիւնն։*

---

Գ. Կոստանդին Երզնկացի:

*Մի եւ կէս դարու չափ լռութենէ վերջն, — որ միջոցէն՝ (եթէ դուրս հանենք Ն. Լամբրոնացւոյ աշակերտին՝ իւր այս վարդապետին մահուան վրայ շինածն եւ քանի մի յիշատակարաններ,)[1] չենք գտներ ուամկօրէն տաղաչափութեան հետք, — յանկարծ յերեւան կ'ելլեն երեք քերթողք՝ իրարու գրեթէ ժամանա-*

---

1 Ղատերուն մէջէն կը յիշատակենք Սմբատայ Սպարապետի ինքնագիր Յիշատակարանն, զոր 1269ին (յիւթն հարցր տառնիութի = ՉԺԸ) յաւելցուցած է իւր 1266ին ընդօրինակել տուած մի Ճաշոցին։ Յիշատակարանս մեծապէս նշանաւոր է՝ թէ բարձրաստիճան Սպարապետ-քերթողին՝ թէ մէջն յիշատակուած կարեւոր դէպքերուն պատճառաւ։ (Տես Սիսուան, էջ 71։)

կակից եւ պաշտօնակից, այս ինքն՝ վարդապետական աստիճանաւ պատուեալ եկեղեցականք, որոց կենաց միջոցն ԺԴ. դարուն վերջերէն՝ մինչեւ ԺԴ.ին կէսէն ետեւ կ'իյնայ։ Երեք քերթող վարդապետքն են Կոստանդին Երզնկացի, Յովհաննէս Երզնկացի եւ Խաչատուր Կեչառեցի։ — Երեք տաղաչափ Վարդապետացս մէջէն՝ առաջնութիւնն ամենայն իրաւամբք կարող ենք տալ Կոստանդնի, ոչ միայն այն պատճառաւ՝ որ իւր գրիչն քան զընկերացն բազմաբեղուն է, այլ նաեւ անոր համար՝ որ իւր տաղերն շատ աւելի կոկ լեզուաւ գրուած են եւ լի են ռամկօրէնի բովանդակ վայելչութեամբն։

Ընծանօթ անձնաւորութիւն է Կ. Երզնկացի եւ հազիւ դարուս մէջերը ծանօթացած իւր տաղերէն, որ հաւանաբար գրուած են ԺԴ. դարուն սկիզբներն։ Յիշեալ տաղերն՝ որ թուով 22 են՝ մեծաւ մասամբ բարոյական նիւթոց վրայ՝ հետզհետէ յօրինած եւ առաքած է ի Դաւրէժ գտնուող Ամիր Փօլ անուամբ իւր բարեկամին, որ անշուշտ զանոնք օրինակած է ընդունելուն կարգաւն։ Բովանդակ գումարութիւն տաղիցս ամփոփուած կը գտնուի 1336ի թուականը կրող ձեռագրի մի մէջ, որ ինչպէս նշանակեցինք՝ ձեռամբ իւր բարեկամին գրուած է ի Դաւրէժ։

Նոյն հաղուագիւտ ձեռագրէն կայ այժմ օրինակ մի (չի նշանակուիր թէ բուն սկզբնագիրն է՝ եթէ ընդօրինակութիւն եւեթ) ի Մատենադարանի Ս. Ղազարու, յորմէ առեալ՝ եօթն

տաղ հրատարակուած է Բազմավէպ օրագրին մէջ. մին՝ 1848ին (էջ 209), երկրորդ մի՝ 1862ին (էջ 98), որ մեր իբրեւ օրինակ ի մէջ բերելիքն է, իսկ մնացեալ հինգն՝ 1866ին (էջ 82, 170, 206, 233 եւ 368)։ — Յայտնի է որ հեղինակին եւ իւր գրութեան վրայ տրուած ծանօթութիւնն եւս առնուած է նոյն Բազմավէպէն (1866, էջ 80—82) դրած տեղեկութենէն, ուր մի առ մի կը նշանակուին 22 տաղերուն վերնագիրներն ալ։

Մեծ գոհութիւն հարիւր հազար,
Մեզ աւետիք է նոր հասել.
Եւ մեզ շնորհք յերկնաւորէն
Յերկնից յերկիրս ի մեզ հոսել։

Երկիր էր լի մութն եւ մըլար,
Սառն էր կապել եւ պաղ ու քար,
Հանց որ չըկար բոյս մի դալար.
Հիմի ինք նոր է զարդարել։

Ձմեռըն բանդ է եւ խաւար.
Գարունն եհաս ու նոր բահար,
'Ի էառ ի մէնջ գիշերն աւար,
Զի արեգակն է մեզ ծագել։

Երկիրս է մայր աննըմանի,
Զինչ գեղեցիկ իրք՝ ծընանի,
Շատ բարութիւնք յինք սընանի.
Հանց որ փուին գեղեցկացել։

Երբոր հնչեց հողմըն հարաւ
Զինչ տրտմութիւն՝ յերկրէ տարաւ.
Հանց որ չըկայ տեղ մի ծարաւ.
Ամէնն են բարութեամբ լըցել։

Հեզ որոտաց ամպ ցօղաբեր,
Կամար կապի յերկինս ի վեր,
Հոսէ յերկիր ահեղ գետեր.
Հաւսար զերկիր են արբուցել։

Է հարսանիք տիեզերաց,
Է ցնծութիւն պտղաբերաց.
Գոյնըզգոյնով ցեղք ի ցեղաց
Ծաղկունք զերկիր են զարդարել։

Ծովըն գըլուրդ առնու սիրով,
Խաղան զեռունք յերկիր 'ւ ի ծով,
Ակունքն յորդոր գան պաղ ու հով,
Եւ ի քարէն յառաջ բղխել։

Աշեղ գոչէն գետերն յոլով
Յորդ ի լերունքն ի վայր գալով,
Գան ման ի ման ծաւալելով,
Սիրով ի ծովն երեւ դըրել։

Խաղան եղունք եւ այծեմունք,
Իջնուն ի դաշտ 'ւ աղբիւրակունք.
Երէվայրիք եւ անասունք
Ի կապանաց են արձակել։

Հաւերըն գան քաղցըր ձայնով,
Ծիծեռն ի հետ սաղմոսելով.
Գայ արտուտիկըն կարդալով,
Ջառաւօտուն է բարբառել։

Աճումն առնուն եւ ծընանին
Հաւք ու գազանք 'ւ երէվայրին։
Ձագօք հաւերն ելնեն պարին
'Ի են միաբան երամ կապել։

Ծաղկունքըն գան եւ ժողովին
Ի բուրաստան 'ւ ի բաղչանին.
Մէկ մի մըտել ի մէջ ծովին,
Տեսն է գեղին 'ւ յերեր կացել։

Բլբուլն եհաս շաքարբերան,
Աւետաբեր մեծ յարութեան.
Վարդին եհար կանանչ վըրան
Որ գայ բազմի զերդ հուր վառել։ . . .

(Բազմավէպ, 1862, էջ 98։)

---

### Դ. Յովհաննէս Երզնկացի:

"Նախընթացին հակառակ ամենածանօթ անձնաւորութիւն է հեղինակս, որ շատ մի արձակ երկասիրութիւններէ զատ՝ ունի նաեւ հազարտողեան ոտանաւոր գրութիւն Յաղագս երկնային շարժմանց: Յիշեալ գրութիւնք գրաբար են՝ մեծագոյն մասամբ ազատ ի ռամկականութենէ: Հազիւ սակաւ մի ռամկօրէն լեզու կը գործածէ քանի մի մանր արձակ գրուածոց մէջ, որ խրատական խօսք են ժողովրդեան եւ տղայոց համար, — անշուշտ ասոնց ամենուն նկատմամբ այն դիտումն ունենալով՝ զոր ունէր Յաղագս երկնային շարժման համառօտ արձակ գրութեան մասին, այս ինքն՝ "Վասն դիւրաւ հասկանալի լինելոյ ընթերցողացն„: (Տես Հետազօտ. էջ 35:) Արդ քերթողս ունի քանի մի տաղեր, որ յիշեալ մանր գրութիւններէն աւելի ռամկօրէն են: Կը գտնենք աստ մաս մի նոյն տաղերէն միոյն, որոյ ամբողջն 58 տուն է՝ մեծագոյն մասամբ չորեքտողեան:

. . . Ես տըկար Յովհաննէս՝ հոգով տառապեալ,
Կարօտած եմ բանիւ որ չեմ լիացել.
Յաշխարհիս եմ կացել հոգօք ցրնորել,
'Ի ի գանձէ հոգեւոր աղքատ մընացել: . . .
Բայց կամիմ ես խօսել բանիկ մի քանի,
Լսեցէք, իմ եղբարք 'ւ որդիք սիրելի:
Տըղայոց միտքըն մոմ կակուղ կու լինի.
Մատնեհար դիր զուսումն, որ շուտով նըստի:
Զերդ զուռիկ է մատղաշ որ հեշտ ոլորի.
Հայելի է պայծառ, որ ժանգ նա չունի.
Զերդ զոսկի է խալաս, որ յայպ նա չունի.
Զերդ ճոհար ակն ու լալ, որ լոյս կու ցայթի:
Թէ ուզես որ կրթես զմանուկն ի բարի,
Դու լըկամ դիր լեզուին որ շատ չի խօսի: . . .

Որ մանկունք էք տըղայք՝ ուսման ցանկացող,
Եղերուք Աստուծոյ եւ մարդու սիրող.
Յուսացիք ի յԱստուած, որ բարեաց է տըւող,
Եւ հնազանդ լիք մարդկան, ուսման ցանկացող։
Թէ տղայ էք մըտօք՝ կաթինըն սիրող,
Ես լինիմ ձեզ ծընող՝ կաթն արբուցանող։
Թէ ոսկոյ 'ւ արծաթոյ գանձի ցանկացող,
Ձեզ ճոհար տամ անգին՝ թէ մարդ կայ գընող։
Աշխարհիս մեծութիւն եւ գանձն է խաբող,
Բայց հոգոյն բանն եւ խօսքն յերկինքն է հանող։
Յաշխարհիս եմ տեսել չորս իրք սիրելի,
Որ ամէն մարդու սիրտ իրենց հաւանի.
Որ ունի գեղեցիկ պատկեր ցանկալի,
Եւ իշխան է եւ մեծ եւ տէր նա գանձի։
Որ հոգւոյն է մաքուր՝ սուրբ 'ւ առաքինի,
Կամ մըտօքն իմաստուն՝ բնութեամբն է բարի.
Պատկերին փառքն ամէն նըմանէ ծաղկի,
Որ թէ հողմըն շնչէ՝ նա շուտ թառամի։
Հարըստին գանձն ամէն զերդ ջուր հեղեղի,
Որ հոսի՝ պահ մի գայ, եւ այլ շուտ ցամքի։ . . .
Թէ նմանես լուսնին աղուոր սուրաթով,
Եւ անխել ես մըտօք եւ կամ պեղծ գործով,
Դու պատկեր ես բըռւած նախշած դեղերով,
Որ թէ ջուրըն թանայ՝ ջնջի նա փութով։
Թէ ազգէ ես դու մեծ իշխան պատըւով,
Կամ ունիս գանձ առատ եւ տունըս ոսկով,
Ու չունիս խելք ու միտք՝ հանճար դու հոգով,
Անասուն ես անբան կամ ոսկի դու կով։
Իմաստուն մարդն ու սուրբ կամար է ամպէ,
Որ յիւր քաղցր յանձրեւէն յերկիր նա ցօղէ։
Իմաստուն մարդն ու սուրբ աղբիւր է ջըրոյ,
Որ ծարուած յինք դիմէ՝ նա արբուցանէ։
Իմաստուն մարդն ու սուրբ յանմահ տընկոյն է,
Որ յիւր շուքըն դիմէ՝ պըտղոյն ճաշակէ։
Իմաստուն մարդն ու սուրբ բըժիշկ հըմուտ է,
Որ հիւանդն յինք դիմէ՝ նա ողջացընէ։
Իմաստուն մարդն ու սուրբ յերկնից լուսոյն է,
Որ անգէտ յինք դիմէ՝ ջահ ըղնա վառէ։ . . .

(Ձեռգ. Մոնդընիս, Թ. 112։)

*Ն. Խաչատուր Կեչառեցի։*

Քերթողը՝ միջին ժամանակաց հայ գրականութեան մէջ՝ իբրեւ հեղինակ հանրածանօթ եղած է, եւ կերպ մը՝ ոչ այնչափ պատուաւոր՝ համբաւ հանած։ Շատ տարիներէ վեր բանասիրաց մէջ ընդհանուր տարածեալ կարծիք կար, որ ինք Սոյն-Կալիսթենեայ Վարուց Աղեքսանդրի հին թարգմանութիւնն ապականած է՝ իւր մուծած ռամկական փոփոխութեամբքն։ Սակայն յետին տարիներն այն թարգմանութեան վրայ եղած ճիշդ ուսումնասիրութիւնք ցուցին թէ ինք յայսմ մասին ամենեւին գործակցութիւն չունի։ Նոյն հռչակաւոր գրոց նկատմամբ իւր գործունէութիւնն յայն միայն կ'ամփոփի, որ ինքն եւս անոնցմէ մին է՝ որ իրենց բանաստեղծական եւ տաղաչափական տաղանդն ի կիր արկած են յիշեալ մատենին մէջ ռամկօրէն եւ ռամկախառն ոտանաւորներ մուծանելու[1]։

Աղեքսանդրի Վարուց վերաբերեալ ոտանաւորներէն զատ՝ կեչառեցիս ունի նաեւ երեք անկախ տաղեր, որ մեր Մատենադարանի Ձուգրց մէջ կը գտնուին։ Անոնց սկզբնաւորութիւնքն են. "Այս կեանքս է յերազ նըման„. — "Թէ մարդ ես եւ միտս ունիս„. — "Ես եմ կորուսեալ չխար„. երեքն ալ բաւական ճարտարութեամբ

---

1 Տես Հ. Յակոբոս Վ. Տաշեան, Ուսումնասիրութիւնք Սոյն-Կալիսթենեայ Վարուց Աղեքսանդրի. Վիեննա, 1892։ Համեմատէ մանաւանդ գլուխն Գ (էջ 85—137), յորում կան նաեւ տեղեկութիւնք Քերթողին վարուց վրայ՝ թէեւ ոչ լիուլի, բայց գոնեայ այնչափ՝ որ կը տեսնուի թէ ԺԳ. դարուն վերջն ու ԺԴ.ին սկիզբն ապրած է, եւ թէ չէր աշխարհիկ երէց՝ այլ վարդապետ։ (Անդ, էջ 124, 125։)

*շինուած եւ ընդարձակ։ Առաջին տաղն իբրեւ օրինակ ամբողջ յառաջ պիտի բերենք. իսկ երկու յաջորդներէն՝ շատ մի նմոյշներ կը տեսնենք գրութեանս շարունակութեան մէջ*[1]։

Այս կեանքս է յերազ նըման,
եւ խաբող անզերծ յանդիման։
Բնութիւնս որ հաստ մարդոյս,
ու տանի յանդունդս ի զընտան։
Գըրոց թէ ականջ դընես,
կամ ունիս միտքս բանական.
Դատաստանին ակըն կալ,
զի տալոց ես անդ պատասխան։
Եկ որ օրինակ բերեմ
զառաջին մարդիքն որ անցան։
Զոր գործեցին զայն տարան,
թէ՛ բարի կենօք թէ՛ մեղան։
Եհաս օր մահու նոցա՝
նա թողին զաշխարհս եւ անցան՝
Ընդ շատ չարչարանքն ի ներս.
եւ միայն պատանք թէ տարան։
Թագաւո՛րք այլ շատ կային.
յԱդամայ զարմիցն որ ծընան.

1 Յիշեալ երեք տողերն անկախ կը կոչենք այնու մտօք՝ որ Աղեքսանդրի Վարուց համար շինուած չեն։ Սակայն այս տողերուն մէջ չեն պակսիր այնպիսի բառեր՝ բացատրութիւններ եւ ասացուածներ, որք երկու տեսակ գրուածոց (Աղեքս. Վարուց համար շինուածներուն եւ մեր անկախ կոչածներուն) հեղինակին նոյնութիւնն յայտնի կը ցուցընեն։ — Մեր տեսակէտէն՝ ասոնցմէ աւելի ուշագրաւ է յաջորդ չորեքտողեանն, զոր Աղեքս. Վարուց համար գրած է Կեչառուեցին.

Հիւանդին Աստուած է դեղ, որ մահու եւ տէրն է կենաց.
Զհաքիմն սաբաբ առեն. խելօքնուն (խելօքաց) է բանս ասացած։
Թէ զճալինոս առեն եւ զԼոխման բազմաց վկայած,
Հրամանն ի վերուստ պիտի, որ օգնէ բժիշկն գոված։

(Տաշեան, անդ, էջ 119, նմոյշ 2։)

Թէ ինչ աստիճանի ծանրակշռութիւն ունի չորեքտողեանս հետազօտութեանցս բժշկական մասին համար՝ զայն այլուր կը տեսնենք։ Առ այժմ համեմատէ Պօղոնեան Սեբաստացի Բժշկին խրատներուն առաջին տունին։ (Բազմավ. 1849, էջ 215։)

Ժամանակն եհաս երեկ,
եւ մըտան ի նեղ գերեզման:
Իսկի չյագեցան նոքա,
մինչ երեկ գողն արքունական:
Լըսէ, զբաղա՛ծ գերի,
թէ ոչ՝ դու լինիս փոշիման:
Խա՛չատուր, զարթիր ի քնոյ,
կատարէ ըզգործդ ի լըման:
Ծանիր զարարիչ Աստուած,
որ չտանի գեհենն ի հաւան:
Կացիր ի կարիս մարմնոյ,
կապեցիր բեռինք ծանրական.
Հո՛գի, թէպէտ շատ զբաղիս,
մեռանիս պարտուք հայրական:
Զայն տուր եւ զարթո ըզքեզ,
դու մըտօք մարդ ողալական:
Ղեկօք հաւատոյ անցիր
ընդ ծըփմամբ ծովուս հոսական:
Ճանապարհ արդար գընա,
որ չտիրէ տանջանքն անվաղճան:
Մի՛ խաբիր անոտի սիրով,
որ խաւար բերէ հոգեկան:
Ցիմար գինին չէ բարի,
նա ամէն մեղաց բանալի:
Նըման այն մօր մի՛ լինիր,
որ չափէ զքամին ի սարի:
Շատ ապրիլըն չէ պարծանք,
պատասխանն իրաւ կու պիտի:
Ու կինըն հանէ ըզմարդ
ի փառաց՝ նըման Եւայի:
Չկարէ փայտ մընալ ի կրակն,
զի գիտես տըրուատ կու այրի.
Պարտ է հեռանալ անտից,
որ չլինի բաժին գեհենի:
Ջուրըն եւ հուրըն չեն ընկեր,
հակառակ են եղծանելի.
Ուստ ողո՛րմած լեր դու,
որ պարտուց գիրըն քո ջնջի:
Սուրբն է Աստուծոյ նըման,
'ւ երանի է ում հանդիպի.
Վառի լոյսն հոգոյն ճրագի,
'ւ անամաչ յերկինս ելանի:
Տամ ես քեզ բարոյ խըրատ,
թէպէտ եմ ողորմ ու լալի:

Բարձուն ողորմած է Տէր,
Նա չըտայ զմեզ կեր գեհենի։
Ցաւօք կու նեղիմ գերիս՝
Թէ լինի՛ դեղ իմ խոցերիս.
Իւծեալ միջաբեկ սրտիւ
կաղաչեմ զԱստուած ամենի,
Փրկէ ի հրոյն ըզմեզ,
եւ չըտայ ճարակ գեհենի։
Քաւիչ է փրկիչն Յիսուս,
ինքն օրհնեալ փառօք հայրենի։

(Ձեռգ. Մանդրինիս, Թ. 112։)

---

Հետեւեալ երկու (ԺԵ. եւ ԺԶ.) դարուց մէջ առջեւնիս կ'ելլէ բազմախուռն գումարութիւն տաղաչափից։ Սակայն որովհետեւ ասոնցմէ շատերուն լեզուն առանձին առաւելութիւն կամ լեզուագիտական հայեցմամբ կարեւորութիւն չունի, միայն երեք նշանաւորագոյններէն մի մի կամ երկ'երկու օրինակ յառաջ կը բերենք։ — Զանց կ'առնենք նաեւ այլ քանի մի տաղեր, որ թէեւ ամենայն նկատմամբ բաւական ընտիր են, բայց յաճախ հրատարակուած ու ամենածանօթ ըլլալով, եւ եթէ կարելի է ասել՝ ոչ սակաւք բերնուց գիտնալով, ընթերցողաց համար չեն կրնար հրապուրիչ զօրութիւն ունենալ։ Այսպիսեաց կարգէն են՝ ի մէջ այլոց՝ Երգ ի վերայ Չախուի. — Տաղ ի վերայ Հերիսայի. — Երգ վասն Թիւթիւնի. — “Ելէք տեսէք զի՞նչ կայր նաւին„. — “Կռունկ մեր աշխարհքէն խապրի՞կ մի չունիս„. եւ ասոնց նմաններ։

---

### Զ. Մկրտիչ Նաղաշ[1]։

Տաղաչափս որ, ինչպէս իւր վերադիրն կը տեսնուի, բանաստեղծութենէ զատ՝ նաեւ նկարչութեան կը զբաղէր, Արքեպիսկոպոս էր Ամիթայ (Տիգրանակերտի) եւ նոյն բարձր պաշտաման մէջ կը գտնուէր ԺԵ. դարուն, — ունի զանազան արձակ եւ ոտանաւոր գրուածներ։ Ծանօթ են այս վերջիններէն՝ 6—7 տաղք, ըստ մասին գրաբար՝ սակաւ կամ շատ ռամկախառն։

Ինչպէս այլ ոչ սակաւ հեղինակաց՝ նոյնպէս Նկարիչ-Տաղաչափիս ծննդեան տեղն ու տարին անծանօթ մնացած են. բայց այն աներկբայ է որ ի 1. Ծան. յիշեալ 1432 թուականէն ետեւ գոնեայ 37 տարի ալ ապրած է, անշուշտ իւր բարձր պաշտաման մէջ, այս ինքն՝ մինչեւ 1469 (ՋԺԸ. = ինն հարիւր տասնեւութին) թուականն. որովհետեւ նոյն տարին շինած է տաղ մի, որ իւր քերթուածոց ամէնէն ընտրելագոյնը կրնայ համարուիլ. յորում սրտաշարժ եղանակաւ եւ կենդանի գոյներով կը նկարագրէ վերոյիշեալ տարին Մէրտին քաղաքը պատահած տղոց սաս-

---

[1] Արաբերէն Նաքքաշ = Նկարիչ բառին ռամկացեալն է Նաղաշ։ Իսկ թէ քերթողս նոյն արուեստն իրօք ի գործ կը դնէր՝ տարակուսի ներքեւ չ'իյնար։ Ըստ Ցուցակի Հայ ձեռագրաց արքունի Մատենադրնին Միւնխէնի (յօրինեալ ի Հ. Գրիգորիս Վ. Գալէմքեարեան) կայ Ժամագիրք-Պատարագամատոյց մի (Թ. 6) գրեալ 1427—1432, որոյ Յիշատակարանին մէջ կը յանձնուի "Յիշել զերջանիկ եւ զերանաշնորհ զԱրքեպիսկոպոսն զՏէր Մկր. Ամթայ, որ երփն երփն գունով եւ զանազան երանգով զարդարեաց զսուրբ գիրքս"։ (Տես Հանդէս ամսօր. 1891, էջ 312։) — Չեն պակսիր այլ եւս սոյնպիսի յիշատակութիւնք։

տիկ կտորածն, ինչպէս յայտնի կը տեսնուի՝ փոխագրական հիւանդութեամբ, թերեւս ծաղիկ ախտիւ։ — Այս տաղն գրեթէ ամբողջ կը գտնենք այստեղ։

Արարիչն արարածոց մեզ բարկացաւ,
Քաղցր բնութիւնն աստուածային մեզ դառնացաւ.
Սուրն հըրեղէն այսօր յերկնից տարածեցաւ,
Հուրն ի տանէն աստուածային բորբոքեցաւ։

Եղուկ ու վայ հազար բերան զինչ գործեցաւ.
Զի նորասէր հարսն ու փեսայն բաժանեցաւ.
Քանի մանուկ մօրուագալի ի հող դարձաւ,
Եւ թէ քանի մայր որդէմեռ մորմոքեցաւ։

Անմեղ տըղայքն ի հրեշտակէն խոցեալ լինին,
Եւ թաւալին առջեւ ծնողացն ողորմագին.
Աղիողորմ ի մօր երեսըն նըւաղին,
Որպէս ծաղիկ գարնանային թառամէին։...

Լացէք այսօր եւ ողբացէք ամենեքեան,
Դառն արտասուօք հառաչեցէք դուք միաբան.
Զի հանց կըսկիծ այլ չէ տեսեր մարդ բանական,
Որ սար ու ձոր եւ ծառ ու ճեղ ամէն կու լան։

Աղէկ մանուկ 'ւ աղուոր պատկեր արեւնըման,
Ունքըն կամար՝ աչքըն կանթեղ էր յանդիման.
Ամէն անձամբն եւ հասակաւ ինքն աննըման,
Ամէն մարդոյ էր սիրելի եւ սիրական։...

Այսօր եհաս դառըն հրաւէր եւ դատաստան,
Ճարակ չունէր ամէն դիմաց 'ւ ոչ օգնական,
Մահու հրեշտակն ահեղակերպ զարհուրական
Ոչ ողորմի նոր փեսային եւ ոչ մանկան։

Մանուկն անկեալ եւ թաւալէր ողորմագին,
Քանզի հասեալ էր օր մահու բուռն ատենին.
Հայէր ողորմ յաջ եւ ի ձախ՝ քակտէր զհոգին,
Ճարակ չունէր 'ւ ոչ օգնական յայնմ ատենին։

Յայնժամ ելաց լալով ասաց. Ինձ խղճացէք,
Եւ զինեհար ի մահուանէ զիս թափեցէք,

Եւ ի ձեռաց սուրբ հրեշտակին ազատեցէք.
Զի դեռ մանուկ եմ, զինեհար զիս գնեցէք:...

Մեռեալն ելաց եւ հառաչեաց, ճարակ չեղաւ,
Դառն արտասուօք դարձեալ ի հայրըն հայեցաւ.
Հա՛յր, զինեհար հասիր մատաթ, հոգիս քակտաւ.
Հազար հասրաթ կայր իմ սրտիս, մէկ մի չեղաւ:

Հայրըն դարձաւ ցորդին ասաց հառաչելով՝
Թէ ճար չունիմ ոսկի 'ւ արծաթ զքեզ գընելով,
Զհոգիս կու տամ հոգւոյդ փոխան յօժար սրտով,
Զինեհար զիս մի խոցեր հրեղէն սըրով:

Հայրըն չկարէր փրրկել զորդին իւր սիրական.
Որդին ելաց եւ հառաչեաց յոգւոց եհան,
Զաչերն ելից դառն արտասուօք ողորմական,
Ելաց զիւր կանանչ արեւըն մանկութեան:

Գեղեցիկ գոյն երեսաց թառամեցաւ,
Եւ ծովային աչքն ի լուսոյն պակասեցաւ.
Վայելուչ զօրեղ բազուկըն կըտրեցաւ.
Լար արծաթոյն ոսկի մանեակըն մանրեցաւ...:

Ես Նաղաշ եպիսկոպոս ծառայ Կուսին,
Աչօք տեսայ զդառըն կըսկիծն ողորմագին.
Լալով լացի եւ ողբացի արտասուագին,
Դառն արտասուօք զողըն ասացի նոր մեռելին:

Ի Հայոց մեծ թըւականին յ'ին հարիւրին
Եւ համառօտ այլ աւելի տասնեւութին.
Աչօք տեսի զողըն եւ զհառաչըն դառնագին
ԶՄէրտին քաղաքն արար զամէնըն լալագին:

Ամէնօրհնեա՛լ Կոյս Մարիամ Աստուածածին,
Զինեհար զմեր նընջեցեալքն ի քեզ յանձին.
Արժան արա զսա անթառամ սուրբ պսակին.
Եւ քեզ ամէնքս երկրպագեմք, Աստուածածին:

(Թ. 118 եւ այլ քանի մի Ձռգիրք Մոնդընիս:)

Քերթողիս տաղերուն մէջ կայ գղջական մ'ալ, որ նախընթացէն աւելի ռամկախառն է եւ շատ սովորական՝ շատ ձեռագրաց մէջ գտնուելով:

Երազ է եւ սուտ, եղբարք,
աշխարհիս բաներն ի լրման.
Ո՞ւր են թագաւորքն 'ւ իշխանք
ու պարոնայք, սուլթան ու խան։
Շինեցին բերդ ու քաղաք,
դարպասնի ու շատ դատեցան։
Յետոյ գէմ անտէր թողին,
ու մնան ի հող 'ւ ի զընտան։
Նաղաշ, մի՛ խաբիր մեղօք,
մի՛ դատիր անանոյ նըման.
Մի՛ գիրկ աշխարհիս ածեր,
մի՛ կարծեր թէ քեզ տի մընան.
Շուտով քեզ խնդիր կու գայ
ու խոցեն ըզհոգիդ մահուան.
Հոգիդ բաժանի ի քէն,
ու մընայ մարմինդ ի զընտան։
Աշխարհս գէմ պօֆայ* չունի,
ոչ արեր է մարդոյ բարի.
Աւուրք մի խնդալ կու տայ.
բայց յետոյ է դառն ու լեղի։
Աշխարհիս մի՛ հաւատար.
զօրն ի բուն գէմ սուտ կու խօսի.
Զինչ որ խոստանայ մարդուն,
չի պահել զիր խօսքն ի տեղի։
Շատոց խոստանայ հանգիստ,
ու պահէ զօրն յերերմընի։
Շատոց մեծութիւն տայց,
ու պահէ աղքատ 'ւ անօթի։
Խաբէ թէ ուրախ պահեմ,
ու առնեմ զօրերս ի բարի.
Ի մէջն ի ծովուն տանի,
ու պահէ ի տարտարոսի։
Աւուրք մի վերայ անցանի,
լուկ մահու օրն հասանի.
Յարեւուն դատարկ հանէ,
եւ առնէ ողորմ ու լալի։
Աւա՜ղ զայն աղուոր մանկտիքն,
որ դարձան ի հող 'ւ ի փոշի.
Իւրեանց ժամանակն անցաւ
զերտ զերազ մութն գիշերի։
Երբ զայս գիտէիր, գերի,
որ քո սէրդ ի սուգ տի փոխի,

---

* Զոգրաց ոմանք կը գրեն ռոֆ, ոմանք՝ պօֆայ, ոմանք՝ պէֆայ։

Զաշխարհըս դու մի՛ սիրեր
առաւել քան զկարն աւելի։
Մալի հարամ մի՛ լինիր,
մեծութիւնըն քեզ չի պիտիր.
Ունիս կերակուր՝ հանդերձ,
աւելին քեզ ցաւ կու լինի։
Է՛ ողորմելի Նաղաշ,
ջանք արա ու գործէ բարի.
Զքո խըրատըն դու լըսէ,
որ այլոց ի գործ անցանի։
Գիտէիր թէ լողորդ էիր,
նա մեղաց գետն կու տանի։
Ի հոգ աշխարհիս դատիս,
շահ չունիս քան զենն աւելի։

(Թ. Լթ. եւ այլ քանի մի Զուգերգ Մանդրնիս։)

---

Ամթայ Արքեպիսկոպոսէն ետեւ կան՝ իբրեւ քերթող՝ իրմէ աւելի հռչակաւոր երկու բարձրաստիճան եկեղեցականք, որոց տաղաչափական գրութեանց ժամանակն՝ ԺԵ. դարուն վերջերն ու ԺԶ.ին առաջին քառորդը կ'իյնայ։ Ասոնք են՝ Յովհաննէս Թուլկուրանցի Սսոյ կաթողիկոս, եւ Գրիգորիս կաթողիկոս Աղթամարայ՝ որ սովորաբար կը կոչուի Գրիգորիս (երբեմն նաեւ Գրիգոր) Աղթամարցի։

---

Ը. Յովհաննէս Թուլկուրանցի։

Երկու ժամանակակից քերթողներէն՝ նախապատուութիւնն ընդհանրապէս կը տրուի Սսոյ կաթողիկոսին (1489—1525), թէ աւելի բանաստեղծական աշխոյժ եւ թէ աւելի առատաբուխ գրիչ ունենալուն համար։ Իւր պահուած տաղերուն թիւն քսանը կ'անցնի. չի կրնար ուրացուիլ նաեւ աշխոյժն ու վառվռուն

ոճը։ — Բայց կարծենք թէ առանց իւր բանաստեղծական աշխուժին վնաս հասցնելու՝ աւելի պատիւ կը բերէր վարած եկեղեցական բարձր պաշտօնին, եթէ քիչ մը աւելի չափաւորէր իւր երեւակայութեան սլացքն։

---

Գրութեանս հին սկզբնական խմբագրութեան մէջ այսչափ համառօտ ակնարկութիւն ըրած էինք քերթուածոցս միոյ մասին Նիւթոյն եւ մանաւանդ չափազանց կենդանի նկարագրութեանց վրայ։ Իսկ այժմ տպագրութեան համար նոյն սկզբնական խմբագրութիւնն աչքէ անցընելու ժամանակ՝ ուզեցինք յաւելուլ յաջորդ տողերն, առնլով այն քննադատական հատածէն՝ որ գրուած է Յովհաննէս Թլկուրանցին եւ իւր տաղերը վերնագրեալ տետրակին հրատարակութեան առթիւ։

“Այս երգիչն (Յով. Թուլկ.), կ՚ըսէ հատածագիրն,... մեր ռամկաբան երգչաց նշանաւորներէն է, որուն երգերը շատ տեղ արդեամբք ընտիր են թէ՛ ըստ կազմութեան ոտանաւորի եւ թէ՛ ըստ բանաստեղծական գեղեցկութեան։ Թուլկուրանցւոյն երգերը բաւական յաճախ կը գտնուին ձեռագրաց մէջ։... Իւր կենաց այլեւայլ պարագաները դեռ շատ մթին են, եւ Հրատարակիչն (Մեծ. Պր. Կ. Կոստանեանց) Թուլկուրանցւոյն վրայ գրած Յառաջաբանութեան մէջ (էջ 1—24) շատ քիչ բան կրցած է որոշ մեր առջեւ դնել այն երգչին կենաց նկատմամբ։ Աւելի մանրամասն ներկայա-

ցուած է այս Ցառաջաբանութեան մէջ Թուլ-կուրանցւոյն երգերու Նկարագիրը, զորոնք Հրատարակիչն երկու խմբի կը բաժնէ, մին՝ Թուլ-կուրանցւոյ դեռ աշխարհական եղած միջոցին, եւ որ մեծաւ մասամբ սիրոյ երգեր են, եւ միւսն կաթողիկոսութեան ատեն յօրինածները՝ որոնք ընդհանրապէս խրատական են: Սակայն այսպիսի բաժանում մը յընդհանուրն միայն ճիշդ է…»: (Տես Հ. Յակոբոս Վ.ի Տաշեան «Քանի մը հրատարակութիւնք» վերնագրեալ Հատածոց 5երորդն. Հանդէս ամսօրեայ, 1893, էջ 270:)

---

Յառաջ կը բերենք այստեղ Քերթողիս մի տաղն, որ կրնայ իբրեւ իւր տաղաչափական գրութեանց Գլուխ-գործոցն Նկատուիլ, եւ է կենդանի Նկարագիր դիւցազնական մահուան վասն հայրենեաց, որոյ սիրոյն կը զոհուի ընտանեաց բնական սէրն, եւ այն՝ սրտաշարժ ազնիւ գոյներով, ռամկօրէն լեզուին վայելչութեան եւ ոտանաւորի կանոնաց պահպանութեան մասին ըստ բաւականի ճիշդ, միով բանիւ՝ ծայրէ ծայր փափուկ ոճով եւ ընտիր աշխուժիւ անզուգական: Այս տաղս այն պատճառաւ ալ ուզեցինք ծանօթացընել, վասն զի իւր Ներքին առաւելութիւններէն զատ, մինչեւ ցայսօր հազիւ միակ ձեռագրի մէջ պահուած կը գտնուի. այնպէս որ հրատարակուած 4—5 թէ ամբողջ եւ թէ մասնական օրինակներն այն միակ ձեռագրէն առնուած կ'երեւան:

### Տաղ քաջի Լիպարիտին:

ՅԱստուծոյ անունն օրհնեալ,
Որ անըսկիզբն եւ անվախճան,
Որ ետուր ուժ Լիպարտին
Եւ զօրացոյց զիւր սուրբ ծառայն:

Զերթ սուրբ Սարգիս քաջն ի Նըման,
Ի սուրբ Թորոս, ի սուրբ Վարդան,
Քան ըզՄուշեղն յաղթող եղեալ,
Քան ըզՏրդատ Հայոց արքայն:

Յորժամ հեծնուր զիւր ձին վազան,
Ի ձեռն առնոյր զըռուռմ ճօճան,
Սասանէր ազգըն Օտրանց,
Դողայր ամէն Օտարաստան:...

Վաթսուն հազար մարդ միաքան
Զըրէհն հագան 'ւ ի ձին հեծան,
Ձեռուին առին զըռուռմ ճօճան,
Թուր եւ ասպար, ու կանգնեցան:...

Յայնժամ ասէ սուրբ Թագաւորն.
Քա՛ջ Լիպարիտ, մեծ զօրական,
Հեծելըս քեզ համար եկան.
Մինչ յայս տեղիս ուր կանգնեցան:...

Քաղցրիկ ետուր պատասխանի՝
Թէ Ես քաղքիս չարին փոխան.
Բայց չէ պատեհ զըրուց առնել,
Թէպէտ հասաւ ինձ օր մահուան:

Էջ եւ Թամբեաց զիւր ձին վազան,
Հագաւ զրէհ 'ւ ի վերայ ճօշան,
Ի գլուխն եդիր յաղթող վահան,
Ի ձեռն էառ զըռուռմ ճօճան:...

Հառաչեաց, զորդեակըն համբուրեաց,
Հանց որ զհեծելն ի լաց եհան:
Ասաց. Որդեա՛կ իմ Յովհաննէս,
Վաղի՛լ, եղբայր իմ սիրական.

Փառօք տիկին դու Մանանայ,
Իշխանուհի արեւնըման,
Հայեաց պատկերս ի մանկութեան,
Որ տի մանում ի հող տապան:

Քաջ Լիպարիտ աստ ցայքայն.
Հայոց թագւոր ազնըւական,
Հաստատ 'ւ ամուր պահէ զկարմունճն,
Որ ես մնում ի մէջն ու գամ:

Յիշեաց զՔրիստոս ահեղաձայն,
Կորեց 'ւ անցաւ առիւծնըման.
Զհեծելն արար փախըստական,
'Ւ ի հետն երթայր ընծանըման:

Լաշկ արաւ դիզան դիզան,
Հանց որ արիւն գետեր ելան:
Նա թագաւորըն չարացաւ,
Զհեծելն առին 'ւ ի յետ դարձան:

Օտրանց հեծելն յառաջ եկին,
Զկարմունճն առին ու կանգնեցան:
Երբ Լիպարիտն ի յետ դարձաւ՝
Նա չար հեծելն ի դէմ ելան:

Ըռումբ դըրին ամէն դիմաց,
Շատ խոցեցին զյաղթող վըկայն.
Հայէր ողորմ յաջ եւ ի ձախ,
Զոչ ոք գտաւ իւր օգնական:

Պաղանադէմ անօրինին
Սըրբոյն արեան ծարաւէին.
Զիւր սուրբ մարմինն ի հոն թողին,
Զգլուխն առին ի հետ տարին:...

Ճառագայթեց լոյսն ի վերան
Եւ սուրբ մարմնոյն ի հանգըստեան:
Քաջ Լիպարիտ ու Սիր Յոհան
Քրիստոնէից համար մեռան:...

Խէվ Յովհաննէս Թուլկուրանցին
Կարճ եւ ողորմ աստ զայս բանս.
Դուք յիշեցէք զինքն հանապազ,
Յաւակ ասէք ի մի բերան:

(Սիսուան, էջ 226:)

Կը յաւելունք նոյն քերթողէն երկրորդ տաղ մ'ալ՝ խրատական կոչուածներէն, որ եւ ամենայն հանգամանօք իւր ընտրելագոյն չափաբերական գրուածոց մին կրնայ համարուիլ:

Է՜ մահ, քանի զքեզ յիշեմ,
կու դողամ ու սարսափիմ ես.
Չըկայ քան ըզքեզ լեղի,
ամենայն լեղւոյ լեղի ես։
Լեղի ամենայն լեղւոյ,
միթէ դու ի քեզ նըմանե՞ս։
Դըժոխք քան ըզքեզ լեղի,
եւ յետոյ զայն այլ դու բերես։
Սողոմոն ըզքեզ յիշեաց,
եւ ասաց եղուկ վայ եմ ես.
Նախատեաց զիմաստութիւն,
ինքն ի յինքն ասաց՝ փու ի քեզ։
Ի՞նչ շահ է իմաստութիւնս,
քան զանգէտ աղքատ մեռայ ես։
Անմեղ եկայ ի յաշխարհս,
եւ մեղօք երթամ սեւերես։

Սողոմոն արքայ ասաց.
Մի՛ ասեր թէ արքայ եմ ես,
Ունիմ շատ դըրախտ, շատ գանձ,
շատ դարպաս եւ ոսկի ի ներս։
Ի զուր խըռովեալ գանձես,
ոչ գիտես թէ ո՛ւմ ժողովես.
Զաշխարհս ես ի գիրկդ առեր,
քեզ ի խոր դըժոխք կու փորես։
Է՜ մահ, թէ դու քէն ունիս,
յԱդամայ որդիս կու հանես։
Կամ մեղաց հարուած ես դու,
ի մահու պըտղէն ծընեալ ես։
Մովսէս մարգարէն չասես,
ի Դաւթայ իսկի չամաչես։
ԶԱբրահամ հայրըն տանիս,
զիսահակ ի հողն անճըռես։

ԶՏըրդատ յաթոռոյն ձըգես,
զԿոստանդին ի յաչք չիբերես։
Թէ կանգնել է հազար հեծել
եւ ժողովք՝ իսկի չիվախես։
Թէ հագել է վեց զըրէհ,
նետ նետես եւ ի թափն անցանես.
Տանիս զնա ի բանտ ածես,
դէմ դըրան վէմ մի դու ձըգես։
Արծիւ ես յերագ թըռչիս,
լայնաձիգ զթեւըդ տարածես։
Զինչ յաշխարհս հըզօր մանուկ՝
ի թեւիդ ծայրն ծըարես։

Հազար երանի նորա,
 զոր բարի գործով գըտանես։
Հեղեղ բոցեղէն տարեր
 ի մեղաց մէջն զով ըմբռնես։
Խեւ Յովհաննէս Թուլկուրանցի,
 զուր ասես՝ զայլ ով խըրատես.
Եօթանասուն ամ լըցեր,
 ի մեղաց դեռ եւըս մէջ ես։

(Ձեռագիր Մանդրինիս Թ. 46՝ հմմտեալ այլ երեք օրինակաց հետ։)

---

Ը. Գրիգորիս Աղթամարցի։

Ի կարգի քերթողաց ժամանակին (ԺԵ.—ԺԶ. դարուց) Թուլկուրանցիէն անմիջապէս յետոյ պէտք է դասել զբանաստեղծն Աղթամարայ։ Ժամանակակից առաջնոյն՝ թէեւ անոր չափ քերթուածք չունենայ երկրորդս, սակայն իւր գրիչն ալ բազմաբեղուն է. — Մատենադարանիս Թ. 112 Ձեռագրին մէջ միայն՝ իւր անուամբ ինն տաղք պահուած են. եւ աստցմով չի փակուիր իւր տաղաչափութեանց տօղանն։ — Թէրեւս վաւվուռն ոճոյ կողմանէ Թուլկուրանցւոյն չհասնին իւր չափական գրուածք. բայց չեն զուրկ քերթողական աշխուժէ եւ ոչ լեզուի վայելչութենէ. ոտանաւորի նիւթական կանոնաւորութեան հայեցմամբ եւս առաջինէն վար չեն մնար։

Դնենք աստ իւր ընտրելագոյն տաղերէն մին, զոր Աստուածատուր Մեծոփեցւոյն խնդրանօք գրած է, ինչպէս կը ծանուցանէ տաղիս վերջին տան երկու առաջին տողերուն մէջ.

Թվական Հայոց ինն հարիւր,
եօթանասուն ւերկու այլ իւր, ՋՀԲ. = 1523:

Ծաղկունքն ասեն՝ Հերի՛ք արա.
Քանի՛ կանչես վարդին վերայ.
Կահուպէկահ ձայնըդ կու գայ.
Ի մեր պաղչիցս ել ու գընա:

Քանի՞ առնէք դուք ինձ յատապ,
Սիրտս ի սիրոյ եղեր քապապ,
Ես կու մաշիմ վարդին սապապ,
Իմ հալս առանց իւրն է խարապ:

Գամ իջանեմ վարդենուն տակ,
Կանանչ տերեւն առնում ինձ յարկ,
Ի սրտիս մէջըն կայ կըրակ.
Թռչիմ եւ գամ արագ արագ:

Ի քեզ նայիմ աչօք անթարթ,
Նա փարատի զինչ կայ հասրաթ.
Գեղեցկութիւն դրախտի եւ զարդ.
Կարօտ են քեզ ամենայն մարդ:

Վարդըն կ'ասէ՝ պլպուլ երգէ,
Քաղցր ձայնիւ եղանակէ.
Ով որ ըղքո ձայնըդ լըսէ,
Նա հիանայ՝ զմեզ երանէ:...

Զօրըն կենամ յերերմանի,
Քունս է հատել ի գիշերի.
Աղաղակեմ արտասուալի
Ցայգոյս չերթամ ես յայլ տեղի:...

Պլպուլն ասաց. Ես եմ առակ,
Կառնեն թռչունքըն զիս կատակ.
Վարդըն չնայէ յինքըն շիտակ,
Նա ի յաչացըս ել վըտակ:...

Վարդն է զգեցեալ գունով հանդերձ,
Ուրախանամ որ լինիմ մերձ.
Կասէ. Սիրով դու առ իս դարձ,
Զահն եւ զերկիւղն ի յիմնէ բարձ:...

Պլպուլն զարթնի կէս գիշերին,
Վարդըն փըթթի առաւօտին,

Յօղն իջանէ վերայ Թըփին,
Պայծառանայ գեղըն վարդին։

Շուրջ ու բոլոր իւրեննըն փուշ,
Հոտըն բուրէ վարդին անուշ.
Թըմբրաւ պլպուլըն եղեւ պէուշ,
Ասաց. Ի՞նչ ժամ եղէ քեզ փուշ։...

Ձայնէ պլպուլըն անամաչ.
Կ'ասէ. Կենայ վարդըն կանանչ,
Ծաղկունքն ամէն ելնուն յառաջ.
Այն զօրաւոր արքային քաջ։...

Ես կու այրիմ միշտ կըրակով,
Թէ չըտեսնում զվարդըն վրանով.
Ցե՞ր կու մերժէք զիս կարօտով.
Ես կու գովեմ զվարդըն ձայնով։

Ցամէն սապահ որ լուսանար,
Պլպուլն ի վարդըն սալամ գար,
Ղումրին քաղցրիկ եղանակէր,
Զվարդն եւ զպլպուլն ուրախ առնէր։...

Վարդն ի պլպուլն երբ խօսեցաւ,
Ա՛յլ տրտմութեան հոգ չիտարաւ,
Քան թէ խընդաց ուրախացաւ,
Զի իւր սրտի սէրն լցուաւ։...

Ի ձեր սրտից դուք սէր չունիք,
Վասն այն զիմ ձայնըս չընդունիք։
Վարդըն կասէ. Մ'աններ հերիք.
Ես կու կանչեմ, ունիմ կարիք։...

Աստուածատուր Մեծոփեցի
Յինէն խնդրեաց, եւ ես գրեցի.
Դուք ասացէք սըրտով ի լի,
Ինձ եւ նորա Տէր ողորմի։

(Ձեռագիր Մոնդրնիս Թ. 112՝ համեմատ այլ քանի մի օրինակաց հետ։)

---

Այս տեղ յառաջ կը բերենք, իբրեւ Գրիգորիսի Աղթամարցւոյ քերթուած, գեղեցիկ տաղ (ողբ) մի մահուան վրայ՝ այլաբանական նմանութեամբ այգւոյ եւ այգեպանի, զոր

ձեռագիրք անանուն պահած են. բայց հաւանական է որ Աղթամարցի քերթողիս գրչին արդիւնքն ըլլայ։ Կարծեացս հաւանականութիւնը ցուցընելու կրնան ծառայել երկու վկայութիւնք։ Բայց ասոնց վրայ չխօսած՝ կարեւոր կը համարինք տաղիս չափուն (ընդարձակութեան) կողմանէ այլեւայլ օրինակաց իրարու համեմատութեան նկատմամբ տեղեկութիւն տալ։

---

Աշխենիս եօթն օրինակ ունինք քերթուածոյս, որոց չորսն Մոնդրինիս ձեռագրաց մէջ կը գտնուին.

Ա. Մոնդրինիս Թ. 118 Զագրին մէջ
Բ. „ „ 167 „ „
Գ. „ „ 168 „ „
Դ. „ „ 171 „ „

Չորսն ալ՝ ըստ թուոյ տանց եւ տողից միեւնոյն են, ունին 16 տուն՝ իւրաքանչիւր տուն չորս չորս տողիւ, որով միոյ միոյ օրինակին տողերուն ամբողջական թիւն է՝ 64։

Միայն Դ. Զագրին մէջ չորրորդ տունն յետոյ երկու անգամ (այն է՝ 10րդ եւ 11րդ տներէն ետեւ) կրկնուած ըլլալով, ըստ երեւութին 15 տուն կամ 72 տող կ'ունենայ։

Այս Զագրաց ընթերցուածքն՝ բաց ի սակաւ աննշանակ տարբերութեանց՝ իրարու հետ նոյն են։

Զագիր օրինակներէս զատ՝ ունինք այլ եւս երեք տպագրեալ օրինակք, որ են յաջորդքս։

Ե. Հրատարակեալն ի Բազմավէպի 1845 ամին, էջ 251, որ ունի նախ 7 տուն չորս չորս տողով, եւ յետոյ 3 տուն երեք երեք տողով, ընդ ամենայն 41 տող։

Զ. Հ. Ղ. Վ.ի Ալիշան Ռամկական երգք Հայոց վերնագրաւ հայ-անգղ. Հաւաքածոյին մէջ (Վենետ. Բ. տպգր. 1867, էջ 19) հրատարակեալն, որ ամէնէն ընդարձակն է՝ ունենալով 20 չորեքտողեան տուն։ — Այս երկու (Ե. եւ Զ.) տպեալ օրինակաց ընթերցուածքն նման են իրարու յայնս՝ յորս կը տարբերին նախընթաց երեք ձեռագիր օրինակներէն, ուստի եւ չեն ճիշդ նոյն իրարու հետ, ինչպէս կրնայ իմացուիլ միայն 41 տող ունենալէն, իսկ միւսոյն՝ 80։

Է. Մատ. ուսուցչապետին հրատարակածն, "Ամառնային ուղեւորութիւնից գեղ ի Հայս" գրութեան մէջ (Վիեն. 1892, էջ 74) որ այլ ամենայն օրինակներէն համառօտագոյն է եւ 35 տողով կը փակի։ — Ընթերցուած վերջին (Է.) օրինակիս՝ զոր Ուսուցչապետն Մատ. ամենայն հաւատարմութեամբ հրատարակած է Էջմիածնի Մատենադրնին մի ձեռագրէն, հնար է ասել թէ կարճառօտ քաղադրութիւն է առաջին երկու տեսակ ընթերցուածոց, ըստ մասին՝ միոյն, ըստ մասին՝ միւսոյն նման ըլլալով։

---

Տեսնենք արդ վերագոյն յիշատակեալ երկու վկայութիւնքն։

Վերը նշանակուած եօթն օրինակներէն Զ^{րդ}ին սկիզբն սա չորս տող ոտանաւորը կը կարդացուի.

> Մէկ եպիսկոպոս՝ մի նոր այգի տնկեր է,
> Եւ դեռ այգին պտուղ տուեալ չէ.
> Նա եպիսկոպոսին օրըն մահուն հասեր է.
> Նա ի հոգեվարին զայս ողբս ասել է։

Չենք գիտեր որ արդեօք այս չորս տողք Հ. Ալիշան Վարդապետի՞ն գրչէն ելած են, թէ՝ նորագոյն ժամանակաց ընդօրինակողի յաւե-

լուած են։ — Զիա՛րդ եւ իցէ, այս ստոյգ կ՚ե-
րեւայ որ Հայ-անգղ. Հաւաքածոյին հմուտ
Հրատարակիչն հաւանեալ է տաղիս՝ եպիսկո-
պոսի — անշուշտ՝ Աղթամարցւոյն — գրու-
թիւնն ըլլալուն, որուն մենք ալ չենք անհաւան։
— Բայց կարծեմ թէ այս երկակողմանի հաւա-
նութենէն պէտք չէ հետեւցնել թէ քերթող-
եպիսկոպոսն այսու տաղիւ իւր անձնական ար-
կածն նկարագրած ըլլայ։ Աւելի պատշաճ կ՚ե-
րեւայ ըսել որ տաղս ընդհանուր բանաստեղ-
ծական նկարագրութիւն է բնական ընդդիմու-
թեան զոր անտիական հասակի եւ երկայն ու եր-
ջանիկ տարեաց ակնկալութեան տէր ամէն երի-
տասարդք հասարակօրէն կ՚ունենան իրենց ակն-
կալութենէն տարաժամ մահուամբ զրկուելու։

Նախընթաց վկայութենէն աւելի որոշ եւ
հիմնական է վկայութիւնն՝ զոր յառաջ կը բերէ
Ուսուցչապետն Մառ՝ Էջմիածնի Մտնդրնին մէջ
պահուած օրինակին առթիւ, (այն է՝ Էրդ օրի-
նակն յիշատակեալ Ցուցակիս,) հրատարակելով
զայն որոշակի յանուն Գրիգորի Աղթամարցւոյ,
ինչպէս որ նշանակեալ գտած է Ձեռագրին վրայ։
Ահաւասիկ իւր խօսքն. "ԺԶ. դարու բանա-
ստեղծ Գրիգոր Աղթամարցին, որը սիրում էր
պարծենալ իւր լեզուաբանական գիտութիւն-
ներով, եւ բանաստեղծութիւններ էր գրում
խառն երեք լեզուներով, մայրենի լեզուով,
պարսկերէն եւ հայերէն, հոգու մարմնից ան-
ջատուելուն մի բանաստեղծութիւն է նուիրել,
այս անգամին հայ լեզուով, որը ձոգրում խորա-

գրուած է այսպէս...„: — Այստեղ (էջ 73) ի Ծան. 1 ճշդիւ մանրամասն կը նշանակէ Մառ Ձեռագրին Թուանշաններն. "Էջմ. Թիւ 86, Ժ Թ 12a Թ. Տաղ գեղեցիկ ի վերայ այգոյ հոգոյ եւ մարմնոյ„:

Մենք աստ կը հրատարակենք այս տաղս ըստ ընթերցուածոյ Թ. 118 Մտնդրնիս՝ համեմատելով Թ. 167, Թ. 168 եւ Թ. 171 Ձեռագրաց հետ:

1. Յամէն առաւօտ եւ լոյս
Պլպուլն է նստեր յայգոյս
Քաղցրիկ ձայներ վրայ վարդոյս,
Կասեն թ' Արեկ եկ յայգոյս.

2. Մարդիք Ադամայ զարմոյս,
Ականջ դրրէք իմ խրատոյս.
Դէմքն է ծաղկեր իմ այգոյս,
Այս իմ նորատունկ այգոյս:

3. Քար եմ բերեր գետերոյս,
Փուշ եմ բերեր սարերոյս.
Ցանկ եմ շիներ այս այգոյս.
Կասեն թ' Արեկ եկ յայգոյս:

4. Չեմ ելներ ես յայս այգոյս,
Այս իմ նորատունկ այգոյս,
Այս ուրախարար տեղոյս
Եւ այս նորաշէն տներոյս:

5. Պրքայ եմ շիներ այգոյս,
Երկնից ցօղն ի մէջ պրքոյս,
Քաղցր եւ բարեհամ ջրրոյս.
Բոլորն է ծաղկունք եւ բոյս:

6. Դեռ չեմ տեսեր կեանք եւ լոյս,
Կասեն թ' Արեկ եկ յայգոյս:
Ի՞նչպէս ելնեմ ես յայգոյս,
Յայս իմ նորաշէն տներոյս:

7. Տունկ եմ տնկեր այս այգոյս,
Սպիտակ ու կարմիր վարդոյս,
Կանաչ բարունակ՝ որթոյս.
Ոզօրմ եմ նստեր այգոյս:

8. Դու չեմ կերեր յայս պտղոյս.
Կասեն թ' Արեկ եւ յայգոյս.
Ի՞նչպէս ելնեմ ես յայգոյս,
Այս իմ նորատունկ այգոյս։

9. Մէջն է ծաղկեր այս այգոյս,
Կարմիր 'ւ իսպիտակ վարդոյս։
Դու հոտ չեմ առեր վարդոյս.
Կասեն թ' Արեկ եւ յայգոյս։

10. Հընձան եմ չիներ այգոյս,
Կարաս եմ լըցեր գինոյս,
Դու չեմ խըմեր յայս գինոյս.
Կասեն թ' Արեկ եւ յայգոյս։

11. Քաղեմ փունջ վարդի յայգոյս,
Դընեմ մէջ կարսի գինոյս,
'Ի ուրախանամ յայս հոտոյս.
Կասեն թ' Արեկ եւ յայգոյս։

12. Գարուն է հասեր ծաղկոյս,
Պըպլուկն է բացուեր վարդոյս,
Պիտէր տեսնի կեանք եւ լոյս.
Հայի՜ֆ իմ կարճ արեւոյս,

13. Վարդն է խըռով պլպուլոյս,
Ձայնս է կըտրեր ի յանձնոյս,
Հոգիս ելեր է մարմնոյս.
Աւա՜ղ ասացէք գերոյս։

14. Հրեշտակն է կանգներ հոգոյս,
Ցահէն կապեցաւ լեզուս,
Եհան զհոգիս ի մարմնոյս.
Ափսո՜ս կանանչ արեւոյս։

15. Տարան ի յեզեր հողոյս.
Դրին զիս ի մէջ գըբոյս.
Ահա, որ ելայ յայգոյս.
Աւա՜ղ իմ կարճ արեւոյս։

16. Ծաղկունքն վերացան յայգոյս,
Վարդըն թափեցաւ յայգոյս,
Ցանկըն քակեցաւ այգոյս,
Ահա որ ելայ յայգոյս։

---

Աչաց առջեւ ունենալով գրութեանս նպատակն, որ գլխաւորաբար լեզուաբանական է, այս Ա. Հատուածիս ութ (Ա.—Ը.) բաժիններուն մէջ զբաղեցանք միայն նոյն թուով հնագոյն եւ նշանաւորագոյն քերթողներով, եւ իւրաքանչիւրին տաղերէն՝ ընտրանօք առնուած եւ իրենց որոշ անուամբ պահուած՝ այնպիսի օրինակներ բերինք, որ բաւական են՝ անոնց վրայ հիմնեալ՝ յաջորդ թերթերուն մէջ մեր լեզուական ուսումնասիրութիւնքն ըստ պատշաճի կատարելու[1]:

Սակայն չենք կարող առանց յիշատակութեան թողուլ այլ երկու տեսակ քերթուածք, որ զանազաննկատմամբ մեծ կարեւորութիւն ունին, բաւական ալ ուշագրաւ են՝ մանաւանդ, ազգային բանաստեղծական ոգւոյն եւ ժողովրդական սովորութեանց տեսակէտներէն, ինչպէս պիտի տեսնենք հետեւեալ երկու (Թ. եւ Ժ.) Հատուածաբաժիններուն մէջ:

---

### Թ. Անանուն Տաղք:

Անանուն (առանց որոշ անուան քերթողի) տաղք չեն այնչափ ցանցառ ի Ձեռագիրս: Բայց հոս մեր խօսքն այն սովորական անանուն տաղերուն վրայ չէ, որ տաղաչափական հաւաքածոյից մէջ հասարակօրէն կը տեսնուին, այնպիսիները՝ կ'ըսենք՝ որ ըստ պատահման, կամ

---

[1] Վերագոյն ակնարկութիւններ ըրած ենք թէ ինչ պատճառաւ այսչափ միայն քերթողաց վրայ պիտի խօսինք եւ այսչափ սակաւ օրինակ յառաջ բերենք: (Տես գլխաւորաբար էջ 12—13 եւ 22:)

ընդօրինակողաց մոռացմամբն ու անփութու-
թեամբ, առանց քերթողի անուան հասած են
մեզի, այլ այնպիսիներն որք՝ ինչչափ կրնայ գու-
շակուիլ՝ այն պատճառաւ անանուն մնացած են,
որովհետեւ քերթողն ինքնին կամաւ ուզած չէ
իւր անունն յայտնել, որք եւ առանձինն յատ-
կանիշներ ունենալով՝ կրնան սովորականներէն
զանազանուիլ։

Չուզելով այլեւայլ տեսակէտներէ ման-
րամասն հետազօտել այսպիսեանց յատկանիշ-
ներն, այսչափ ինչ բաւական կը համարինք յի-
շատակել՝ որ քերթողին կամօքն անանուն պա-
հուած տաղք գրեթէ միշտ սահմանեալ են
հրապարակաւ երգեցուելու, եւ պարզ՝ ընտա-
նեկան խօսակցութեան — է զի՝ Տրամախօսու-
թեան (Dialogue) եւ է զի՝ Մենախօսութեան
(Monologue) — ձեւով ու բնական սրտաշարժ
ոճով շինուած են, իբր թէ այսպիսի տաղերով
նկարագրուած դէպքերն անձամբ փորձողներն
ըլլան իրենց պատահածն՝ երգով ունկնդրաց
պատմողներն։ Յայտնի է որ այս ձեւով ու ոճով
յօրինեալ տաղն երգուած ատեն՝ շատ աւելի
ազդեցութիւն կ՚ընէ լսողներուն վրայ, եւ անոնց
սիրտն ու հոգին աւելի կը շարժէ՝ քան թէ հա-
սարակ ձեւով ու ոճով շինուածն։

Արդ՝ ըստ մեր կարծեաց՝ այս է պատճառն
որ այսպիսեաց հեղինակներն ինքնին ծածկած
են իրենց անունն, համարելով որ եթէ անուն-
նին որոշ ծանուցանէին, այնու ի դերեւ կ՚ելլէր
պատրանքն (illusion), եւ երգերն իրենց ազդե-

*ցութիւնը կը կորուսանէին՝ գէթ մեծաւ մասամբ։*[1]

*Վերոյգրեալ տողերով դիտեցինք բացատրել այս տեսակ անանուն տաղերուն նկատմամբ մեր ըրած հետազօտութենէն ստացած գաղափարնիս։ Թող տեղեակ բանասէր ընթերցողք դատաստան ընեն ի մասին հաւանականութեան այս գաղափարին։ Եւ եթէ մերինէն տարբեր կամ անոր հակառակ գաղափար ունեցողներ կան, հաճին յայտնել իրենց խուզարկութեանց արդիւնքն, որով զմեզ շնորհապարտ պիտի կացուցանեն։*

‖ *Բնագիր առնուած է մեր Մատենադարանի Թ.* 405, *թղ.* 4բ–6ա *Ձեռագիրը* (= A)։ *Տաղս հրատարակուած է այլ եւ այլ անգամներ, այսպէս՝ Յովհ. քհ. Միրեան* ԵՐԿՐԱԳՈՒՆՑԻ (1888, *էջ* 13–14 = B), *Հ. Ալիշան* (?) ԲԱԶՄԱՎԷՊԻ (1862, *էջ* 205–206 = C), *Սրուանձտեանց իւր* ՄԱՆԱՆԱՅԻ (*Կ.Պոլիս*, 1874, *էջ* 262–63 = D) *եւ Կոստանեանց իւր Մկրտիչ Նաղաշի մէջ* (*էջ* 47–48 = K), *հանելով Մանանայէն։ Մեր հրատարակութիւնը համեմատած ենք ասոնց հետ եւ տարբերութիւնքը նշանակած։ Պէտք է մատդիր ընել այս տեղ որ* B–K *օրինակներն բաւական կը խտորին* A*էն, բայց հնութիւնը եւ պարզութիւնը վերջնոյս քով միայն նկատելի է։ Թէ* C *եւ թէ* DK, *ինչպէս կ'երեւայ, կամայական փոփոխութիւններ մուծուցած են ձեռագրաց ընծայած բնագիրներու մէջ։ Հարկ չկայ ըսել թէ ամբողջ տաղն շատ փափուկ զգածման արտադրութիւն է, ուր զգալի է հաւասարապէս նաեւ ուժգնօրէն լեզուի քնքշութիւնը եւ դիւրաթեքութիւնը։ Այս տաղն զննելով հօս՝ կը համարինք թէ մեղանչած չենք հեղինակին*

---

1 *Այսու չենք դիտեր հաստատել թէ այն ձեւով ու ոճով շինուած տաղք՝ առանց բացառութեան միշտ անանուն կ'ըլլան։ Հակառակ դէպքերու չեն պակսիր օրինակք, յորս երեւելի է Ամթայ Մկրտիչ եպիսկոպոսին՝* Արարչէն արարածոց մեղ բարեխօսն *ողբն։ (Տես վերագոյն էջ* 24։) *Ասկէ ընտրելագոյն օրինակ կրնար համարուիլ Գրիգորիսի Աղթամարցւոյ* Յովէն առաւօտ եւ լոյս *ողբն, զոր թէպէտ շատ Ձեռագիրք անանուն պահած են, տես վերագոյն էջ* 35—39, *սակայն եւ այնպէս չուզեցինք զրկել զինքն իւր բանաստեղծական պսակին պայծառագոյն դափնիէն՝ նոյն գեղեցիկ տաղն անանուանց կարգը դասելով։*

դիտաւորութեան դէմ։ Ձեռագիրն չունենալով ձեռքս, կարելի չեղաւ իմանալ թէ որ տաղն կը բաղձար այս տեղ դնել։

Վայրի հաւուկ մի ըռնած ու բերած
ու դըրած զինքն ի նեղ զընտան։
Զուրախանայր սիրտ բաժանելոյս յընկերաց,
որ չեմ յերամն։
Եթէ հազար գոյնըզգոյն թեպուր է բերած
ինձ ղալատ կու տան։
Զուրախանայր սիրտ բաժանելոյս յընկերաց,
որ չեմ յերամն։
Եթէ շաքարն է մաղած շաղած ու բերած
ինձ կերակուր կու տան.
Զուրախանայր սիրտ բաժանելոյս յընկերաց.
որ չեմ յերամն։
Եթէ զօպլպուլն ու զղումրին է բերած
ինձ երգ ասել կու տան.
Զուրախանայր սիրտ բաժանելոյս յընկերաց,
որ չեմ յերամն։
Թէ հազար թախտի հուքմն տան
ու հարիւր հազրի տէր առնեն.
Զուրախանայր սիրտ բաժանելոյս յընկերաց,
որ չեմ յերամն։

---

Խորագիրն ունին՝ A. տաղ ուրախութեան. B. տաղ խիստ գեղեցիկ. C անընկեր. DK տաղ վասն զարիպութեան։

1. B մի էր. DK մի եմ. B չիք՝ ու բերած ու. DK բ. դրած զիս։

2. B սիրտս։ BDK յընկերացս։ C չիք՝ որ չեմ յերամ։

2—3 երկու տողերուս մէջ տեղ B—K ունին՝ Արտաբեկեալ եմ միջակտոր ճար չունիմ ինչ լինամ (DK զինչ լինիմ) գերիս։

3. BC փետուր. DK փետուրներ։ DK ինձ բերեն խալաթ։ C ինձ խալլիաթ. K չուրախանամ. A ունի հոս համառօտութեամբ՝ չուրախ.։

4. B շաքար էր. DK զշաքարն ի Մազածու բերեն ինձ կերակուր տան։ B շաղված, C շաղուած։

5. C թէ. B ղումրին բերած ինձ համար երգասաց գուսան. C. ինձ երգասաց կու տան. DK ղ. բերեն ինձ երգասաց գուսան։ —

6. B եթէ. BC հուքմ. DK ի հուքմն ինձ. CDK հազարի. B այնեն. B առնեն զիս։ —

Եթէ հազար ինձ մըճլիս զուգեն
քաղցըր երգով զիս զուարճացնեն.
Զուրախանայր սիրտ բաժանելոյս յընկերաց,
որ չեմ յերամն։
Եթէ հազար ինձ ծառայ բերեն
՚ւ անհամար հեծել ձիաւոր.
Զուրախանայր սիրտ բաժանելոյս յընկերաց,
որ չեմ յերամն։
Եթէ դարպաս մ՚էր շինած ոսկով
զարդարած անգին մարգարտով.
Զուրախանայր սիրտ բաժանելոյս յընկերաց,
որ չեմ յերամն։
Եթէ հընար ու ճարակ լինէր ինձ
ելնել ի նեղ զընտանէս.
Զուրախանայր սիրտ բաժանելոյս յընկերաց,
որ չեմ յերամն։
Եթէ լինէր որ թռչի բարձրանայի
տեսնէի զիմ երամն.
Խաղալով ու խառնելով կարկըչելով
իջնէի յիմ երամն.
Յայնժամ ուրախանայր սիրտ բաժանելոյս յընկերացս
որ խառնիմ յիմ երամն։
Զարթիմ ի քնոյ, զերդ տղայ մօր գրկի ի քուն.
Եւ արհնեմ զԱստուած կենդանի,
որ հասոյց զիս ի յիմ երամն։ ‖

---

7. BC մէջլիս. C դընեն։ DK չունին այս տողը։
8. K բիւր բիւրոց.
9. DK դ. ինձ շինեն։ B. ինձ ոսկւով. C. մեր։
9—10. B եթէ Հերակլի եւ Աղեքսանդրու պէս աշխարհիս թագաւորէի, չուրախանայր։
10. C թէ. B այս նեղ։
10—11. C ունի՝ յայնժամ ուրախանայր սիրտ բաժանելոյս յընկերացս։ B եթէ ամենքդ գայք, վայ ասէք ինձ համար որ եմ գնտանած. չ.։
11 BC թռչէի։ C թէ։ C տեսանել զերամն. DK տեսնի։
12. C չունի տողս։ DK խաղալով ճախրելով ու։ BDK կարկաչելով։ DK խառնել յիմ։ B իջնում յիմ երամ։
13. B ուրախանայ. A. սիրտ ս. A. ընկերացս.
14. DK չունին տողս, այլ "Յայնժամ խառնէի յընկերացս երամ"։ C Արդ զարթնում. B զերթ։ A տղա. B տղայ մ՚. A որ կրկին։ C վերջին տողս ունի դըրաց զիս ի յերամն։

*Ժ. Ժողովրդական անգիր Երգեր։*

Այս բաժնիս մէջ պիտի տեսնենք այնպիսի երգեր, որ շինուած են Հայոց աշխարհին այլեւայլ գաւառաց յատուկ բարբառովը։ Հարկ չէ ըսել թէ ասոնց էական է անանուն ըլլալ, որովհետեւ ժառանգական աւանդութեան պէս՝ բերնէ բերան անցնելով, բնակիչք գաւառին կ'երգեն հրապարակական եւ տնային ակումբներու մէջ։ Ասոնց նպատակն ըստ ինքեան կը նոյնանայ նախընթաց (Թ.) բաժնին մէջ յառաջ բերուածներուն հետ, որ՝ ինչպէս դիտեցինք՝ ունկնդրաց սիրտն ու հոգին շարժելն է։ Բայց գաւառականքս աւելի ճարտարութեամբ շինուած են քան զգրաւորականներն, եւ շատ անգամ կը յիշեցընեն Գողթան երգերն՝ մանաւանդ անոնց գեղեցիկ կրկնութեանց եւ նմանաձայնութեանց հետեւելով։ Դարձեալ գաւառականքս մեծապէս հաճոյական կ'ըլլան ունկնդրաց, այնու որ համեմատ են իրենց ճաշակին, եւ տեղական սովորութեանց համաձայն։ Վերջապէս երգուածն ժողովրդական լեզուաւ ըլլալով, ամենայն ոք կը հասկընայ, մինչդեռ գրաւոր տաղերուն լեզուն դժուարաւ եւ ըստ մասին եւեթ կրնան իմանալ շատք։

‖ Այս կարգի երգերէն վերջերս մեծ թիւ մը լոյս տեսած է արդեամբք Սրուանձտեանցի, Հայկունիի եւ այլոց։ Բաւական ըլլայ այս տեղ իբրեւ օրինակ ի մէջ բերել Ակնայ բարբառէն հետեւեալ կտորը, զոր հրատարակած է Յ. Կ. Ճանիկեան (Հնութիւնք Ակնայ, Ցփղիս, 1895, էջ 441–42) “Հարսն առ Ջուրն եւ առ Ղարիպն„ խորագրոյ տակ։

Ջրիկ, ո՞ր ակնէն կուգաս.
Իմ պաղուկ ջրիկ ու անուշիկ։
— Ես ալ ան ակնէն կուգամ,
Հին ու նոր ձնակն է վրաս։
— Եկո՛ւր մեր պախճան տանիմ,
Վարդ ու նուռ ունիմ ջրելու.
Վարդ ու նուռ ունիմ ջրելու,
Ըռաշանս փունջ հանելու։
Քաղիմ ու փունջ փունջ անիմ,
Արմուղան[1] խրկիմ խարիպիս։
Առնէ ու քնթին դնէ,
Սիւլպէնտին[2] փաթերը շարէ։
Սիւլպէնտն ալ արեւ ըլլայ,
Իր եարուն սրտիկը ցաթէ։
— Խարիպ իմ, դուռըտ եկի,
Բա՛ց դ'ուռտ ուր մտնիմ ի ներս։
Քաղիմ վարդ ու ըռաշան,
Կարմիր խնձոր տամ ի քեզ։
— Դուռտ բանամ ներս առնիմ,
Ինծի շատ ամօթ կու լընի։
Գնա՛ հիջի ան գեղը,
Հէլպէթ ան գեղը խան ունի։
Պառկէ՛ ու եղիր անուշ քուն.
Հէլպէթ աս մութս լոյս ունի։
Մութն երթայ ու լոյը գայ,
Խարիպ ես ճամբեկս երեւնայ։
— Եարո՛ւկ, քեզի ի՞նչ արի.
Ուր իս ճամբու գրիր քի գնա՛։
Ո՛ւչ պ'ոզ մի պաշար տուիր,
Ո՛ւչ ճերմակ ծոցում նավալէ[3]։
Երթամ ու Վանքը տ'իջնիմ,
Սուրբ Սարգիս տանիմ հավալէ[4]։
Քեզ առնէ ու ինծի բերէ,
Ուր ժողվէ ալէմ[5] ի վրայ։
— Մօտիկ Աղբիր՝ դէմտ գամ,
Ու՝ եա՛րս խաթրտ չի մնայ։

---

[1] Ընծայ։

[2] Հին զարդ մը։

[3] Մրգեղէն։

[4] Փոխանցում, յանձնում։

[5] Բոլոր աշխարհ։

Առնիմ ոտք-ակիտ փոշին,
Ուր աչքս քաշիմ թիւթիա՝
Աչքս քաշիմ թիւթիա,
Պէլքի լուսը շատանայ։

Երգին յօրինուածքը եւ լեզուին առանձնայատկութիւնք խօսք չեն ուզեր։

* * *

Հոս կը վերջանայ Հեղինակին գործը. բայց որչափ կը տեսնուի ձեռագիր յաջորդներէն, ծրագրին մէջ ունեցած է յատուկ գլուխ մը խօսիլ նաեւ Հայ աշուղներու վրայ, առանձնապէս Յովնաթան Նաղաշի վրայ, որուն տաղերն ծանօթ եղած են իրեն մեր Թ. 537 Ձեռագրէն։ Առ այս փոքրիկ հատուած մը գրած ալ է, ուր եւ միայն ունեցած է տալ Յակոբ Նաղաշի Որդեգրութիւնն իւր Հօրը վրայ։

Քանի որ Պր. Ա. Չօպանեան վերջերս հրատարակեց զայն ամբողջութեամբ նոյն Ձեռագրին վրայէն, աւելորդ էր կրկին տպագրութեան յանձնել։ Բայց յարգած ըլլալու համար Հեղինակին ծրագիրը, իբրեւ Յաւելուած կը կցենք գործոյս մեր ուսումնասիրութիւնը Յովնաթանի եւ Յովնաթանեանց մասին։ ‖

ՀՐՏ.

Բ.

# ՅՈՎՆԱԹԱՆ ՆԱՂԱՇ

ԵՒ

## ՆԱՂԱՇ ՅՈՎՆԱԹԱՆԵԱՆՔ

ԵՒ ԻՐԵՆՑ ԲԱՆԱՍՏԵՂԾԱԿԱՆ ԵՒ ՆԿԱՐ-
ՉԱԿԱՆ ԱՇԽԱՏՈՒԹԻՒՆՔ

ԳՐԵՑ

Հ. ՆԵՐՍԷՍ ԱԿԻՆԵԱՆ

ՄԽԻԹ. ՈՒԽՏԷՆ

ՎԻԵՆՆԱ

ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ

1911.

## ՅՈՎՆԱԹԱՆ ՆԱՂԱՇ

ԵՒ

## ՆԱՂԱՇ ՅՈՎՆԱԹԱՆԵԱՆՔ

*«Ինքըն պակասեալ Անունըն մընայ,*
*Այր երեւելի Նաղաշ Յովնաթան:»*

Այսպիսի գիտակից տողերով համարած է սփոփանք մատուցանել իր ցաւոց Նաղաշ Յակոբ, հօրը՝ Յովնաթանի կորստեան առթիւ։

1. Թէ կրնա՞ր յիրաւի մոռցուիլ երբեք հոյակապ «Նաղաշի» մը եւ սիրուած «Բանաստեղծի» մ'Անունը, զայս չէր կրնար ենթադրել Յակոբ ծաղկեալ ժամանակ մը, երբ թէ՛ կենդանութիւնն եւ թէ՛ անշունչ քարերը Յովնաթանը կը հռչակէին՝ ուրախութեան խնջոյքներու վրայ եւ եկեղեցիներու ու ապարանքներու նկարազարդ յարկերու ներքեւ։

Բայց արդեամբք մոռցուեցաւ Յովնաթան . . . ։ Վայրագ Նադր Շահերու եւ նման հրոսակներու մարդախանձ եւ վայրաքանդ արշաւանքները լռեցուցին Արարատեան երկրին կենդանութիւնն եւ աւեր ամայի դարձուցին նուիրական եկեղեցիներն ու ապարանքները,

դառն փոխարէն միայն հատուցանելով “երեւելի„ վաստակաւորին “Անուան„ . . . ։

Ի սպառ չէ եղած սակայն մոռացութիւնը. ուր ձայնը լռած է, գրիչը ջանացած է աղաղակել։ Ձեռագրաց լուռ հաւաքածոներու մէջ գոնէ անմահացուած է երեւելի մարդուն Անունը։

2. Ցովնաթան բաց ի անուանի Նաղաշ մ'ըլլալէ, եղած է նաեւ յայտնի երգիչ, որ երգած է բազմաթիւ եւ բազմագոյն ուրախութեան եւ երգիծական երգեր, զորոնք նաեւ գրաւոր թողուցած է։ Շատ տաղարաններ հիւրընկալած են զանոնք իրենց ծոցը, որոնք իրենց շնորհքովը գրաւած են նաեւ լուրջ ուշադրութիւն եւ ոմանք տպագրութեան իսկ արժանացած քանիցս։

Ինձի ծանօթ ձեռագիրները միայն յիշելով՝ մեր Մատենադարանն ունինք երկու ընտիր Ձեռագիր, որոնք կը ներկայացընեն Ցովնաթանի տաղերուն գրեթէ ամբողջական հաւաքածոն։ Կան նաեւ բազմաթիւ Տաղարաններ, որոնք իրենց մէջ ցրիւ կը բովանդակեն Ցովնաթանի տաղերէն հարուստ մաս մը։ Անշուշտ նաեւ ուրիշ Հաւաքմանց մէջ գտնուելու են նման ձեռագիրներ։

3. Մեր Մատենադարանի Թ. 537 Ձեռագրին մանրամասն նկարագրութիւնը տուած է Հ. Տաշեան 1896ին, յառաջ բերելով ընդարձակ եւ համառօտ քաղուածքներ ալ[1]։

---

[1] Տաշեան Հ. Յ.՝ Ցուցակ Ձեռագրաց Մխիթ. Մատենադարանին Վիեննայ, էջ 1006–1009։

Սակայն մինչեւ Տաշեանի հրատարակութիւնը գրեթէ ոչինչ էր հասարակութեան ծանօթութիւնը Յովնաթանի կեանքին եւ երգերուն վրայ։ Դեռ 1885ին Յ. Յարութիւնեան լոյս հանելով ձեռագիրներէն «Գիներգութիւնք Նաղաշ Յովնաթանի» (ՄԱՍԻՍ 1885, էջ 657—658) «ԺԶ դարուն մէջ ապրող հայ երգիչ մը» գիտէր։

Յովնաթանի կեանքին եւ տաղերու ակներեւ յայտնութիւնը կը պարտինք դարձեալ Նահապետ Քուչակի Տաղերու փութաջան հրատարակչին։

Ա. Չօպանեան ծանօթացած է Յովնաթանի երգերուն 1898ին առաջին անգամ Վիեննա մեր Մատենադարանի ձեռագիրներէն. եւ արդէն Les Trouvères Arméniensի մէջ (Բ. տպ. Paris, 1906, p. 241—247) յարգած էր անոր Անունը՝ դասելով ընտիր երգիչներու թուին մէջ եւ տալով գաղղիերէն թարգմանութեամբ ալ երեք երգ։ Այժմ հրապարակի վրայ կը դնէ Յովնաթանի երգերուն գրեթէ ամբողջական հրատարակութիւնն՝[1] ընդարձակ ներածութեամբ մը ճոխացուցած եւ զարդա-

---

[1] Նաղաշ Յովնաթան աշուղը եւ Յովնաթան Յովնաթանեան նկարիչը։ Հրտ. Արշակ Չօպանեան. Փարիզ, տպ. Ներսէսեան, 1910. 8° մեծ, էջ 129։ Ծախուք Տ. Խան Քելեկեանի։ Էջ 7–31 Ներածութիւն. էջ 35–109 Տաղերու բնագիրները (ԽԶ տաղ), էջ 113—116 Նաղաշ Յակոբի ողբերգութիւնը եւ էջ 117–129 Բառարան, Ցանկ եւ Վրիպակք։

*րած Նաղաշի վերագրեալ նկարներու հարուստ թուով մը։*

*Ամենայն շնորհակալութեան արժանի է Ա. Չօպանեան իւր այս աշխատութեամբը։ Բայց պիտի ներէ մեզի, եթէ ըսենք նաեւ, որ Յովնաթանի կեանքը չէ ներկայացուած հոն այնպէս ինչպէս բաղձալի էր, եւ չէ տուած տաղերն ամբողջութեամբ, որչափ ծանօթ էին անոնք ձեռագիր հաւաքածոներէ։ Ուստի պիտի խնդրենք, որ թոյլ տայ մեզի փորձել Յովնաթանի եւ Յովնաթանեանց կեանքն եւ գործունէութիւնն միասնագամ քննութեան նիւթ ընել ընդարձակօրէն, եթէ նոյն իսկ այստեղ ինչ ինչ ստիպուինք կրկնել, զորոնք կանխած էր ըսել ինքը։ Վասն զի, ինչպէս կը զգանք, Յարգելի Հրատարակչին ծանօթ կամ մատչելի չեն եղած կարգ մը կարեւոր յիշատակարաններ, որոնք բոլորովին նոր լոյս կը սփռեն Յովնաթանի գործունէութիւնն գնահատելու համար ըստ արժանւոյն, թէ իբրեւ երգիչ կամ աշուղ թէ իբրեւ նկարիչ։*

*4. Յովնաթան Նաղաշ վախճանած է[1] փրկչական 1722 Հոկտ. 27ին այս կը պատահի «վաթսուն եւ մէկ ամն յորժամ վըճարեաց», որով ծնունդն (ի Շոռոթ[2]) կարելի կ'ըլլայ նշանա-*

---

[1] *Յովնաթանի կենսագրութեան համար գեղեցիկ յիշատակարան մ'է իւր Յակոբ որդւոյն գրած Ողբերգութիւնը, զոր հրատարակած էր Չօպանեան, ինչպէս յիշեցինք։ Անկէ ծանօթ է մահուան թուականն ալ։*

[2] *Թէեւ կը պակսի մասնաւոր յիշատակութիւն Յովնաթանի հայրենեաց նկատմամբ, բայց հարկ է Երնջա-*

կել 1660/61ին։ Հօր անունն էր Տէր Յովհաննէս, որ 1682ին արդէն կնքած էր մահկանացուն, ինչպէս կը տեսնուի Յովնաթանի իսկագիր հետեւեալ Յիշատակարանէն, զոր գրած է այդ թուին Ագուլիս՝ Յովսէպոսի *Վասն Հրէական Պատերազմին* գրոց իր ընդօրինակութեան վերջը[1].

*"Արդ գրեցաւ զսա ի քաղաքն Ագուլիս ընդ հովանեաւ սրբոյն Քրիստափորի սուրբ վկային Քրիստոսի։ . . Ի թուականիս Հայոց ՌՃԼԱ։ . . Արդ գրեցաւ զսա ձեռամբ Յովնաթան դպրի . ի գէօղէն Շոռոթոյ . եւ հայրն իմ ըզՏէր Յոհանն հանգուցեալն ի Քրիստոս . եւ զծնողսն իմ յիշեսջիք ի մի բերան . յիշողսդ յիշեալ լիջիս ի Տեառնէ։"*

Այս տողերու համաձայն Յովնաթան զրկուած է իւր քահանայ հօրմէն արդէն քսանամեայ։

---

կայ Շոռոթն ենթադրել, ուր ապրած է երկար ժամանակ ալ։ Շոռոթի մասին տե՛ս Սիսական, էջ 352—59։

[1] Հմմտ. Սիսական, էջ 329. անդ էջ 331 նաեւ նմանահանութեամբ տուած է Հ. Ալիշան Յովնաթանի այս Յիշատակարանը. աստ միտ չէ գրած Գ. Զօպանեան, որ նոյնը յառաջ բերած է Հ. Պոտուրեանի օրինակութեամբ (ինչ ինչ վրիպակներով)։ Գ. Զօպանեան չի համարձակիր Յիշատակարանս Յովնաթանի ձեռքէն համարել աներկբայ. բայց ըստ մեզ աւելորդ է տարակոյս այս մասին. թէ՛ ժամանակակցութիւնն եւ թէ՛ պարագաներն համաձայն են. ինչպէս իր մէկ տաղէն կը տեսնուի. Յովնաթան գտնուած է ժամանակ մը Ագուլիս եւ նուիրած է նաեւ երգիծական տաղ մը Ագուլեցի Թումային, որ 40 տարուան կարդալ սորված է։ Հ. Ալիշան, անդ 357, կը գրէ "ի բնիկն ի Շոռոթ՝ յայս ժամանակս եւ յետոյ եւս ծանօթ են ինձ գրոց աշակերտք. Յովնաթան դպիր որդի Յովհաննու երիցու, որոյ ձեռագիր մոփսանք գտանին յամին 1682"։

Եթէ սխալման մէջ չենք գտնուիր, յաջողած է մեզի յերեւան հանել նաեւ Տէր Յովհաննէսի անձնաւորութիւնն եւ իւր նախնեաց տոհմագրութիւնն ընդարձակ գծերով։

Գարեգին եպ. Սրուանձտեանց տեսած է Վանայ կտուց Անապատի մէջ ձեռագիր Աստուածաշունչ մը, զոր եւ նկարագրած է մանրամասնութեամբ (*Հնոց-Նորոց*, կ.պ. 1874, էջ 127—134). Ձեռագրին ընդօրինակողն եղած է Յովհաննէս վարդապետ, օրինակած ի խնդրոյ Փշրկենց խօջայ Մարգարի[1], որ նուիրած է զայն Շուռոթոյ Ս. Յակոբ եկեղեցւոյն։ Ձեռագրին Յիշատակարաններէն ուշադրութեան արժանին է յատկապէս հետեւեալը (էջ 132—34).

"*Ծաղկեցաւ տառս Աստուածաշունչ նուաստ տխեղծ Յովհաննէս քանի սպասաւորէ Շոռոթեցւոյ որդւոյ Վարդան քահանայի, թուին ՌՂԸ (= 1649), օգոստոսի Ի:*„

Սոյն անձիս ձեռքէն ուրիշ աւելի կարեւոր յիշատակարան մը յառաջ կը բերէ Հ. Ալիշան իւր *Սիսականի* Յաւելուածին մէջ (էջ 562), ուր թէեւ գրչութեան թուականը մոռցուած է նշանակել, բայց կը վերաբերի աներկբայ այս շրջանին։ Ձեռագիրն է "Լուծմունք Դաւիթ Անյաղթի ի Յովհ. Որոտնեցւոյ եւ Գր. Տաթեւացւոյ„։ Այս Յիշատակարանիս մեզի կարեւոր մասն է.

---

[1] Փշրկենց խօջայ Մարգար Շուռոթեցւոյ մասին տես նաեւ Սխտոյան, էջ 355։

"Ես Նուաստ եւ յետին ի բանաւէրս՝ Յովհաննէս, անուամբ եւեթ կոչեցեալ վարդապետ, որդի Տէր Վարդան քահանայի որ զՍ. Աստուածածնի Անապատս շինեաց ի գեւղաքաղաքս Շոռոթ, եւ ժողովեաց բազում կուսան կրօնաւորս, եւ հաստատեաց եւ լցոյց ամենայն շինութեամբ եւ բարութեամբ անպակաս, հոգեւորօք եւ մարմնաւորօք. եւ ինքն փոխեցաւ առ յոյսն ընաւից ի տենչալին իւր: Ես Յովհաննէս Վարդապետ ետու գրել զիմաստասիրական գիրքս . . . եւ եդի զսա ի դուռն Ս. Աստուածածնի անապատիս մերոյ Շոռոթու, յիշատակ հոգւոյ իմոյ, ի վայելումն մանկանց Սիոնի: . . . Յիշեսջիք ի մաքրափայլ աղօթս ձեր . . . զհայրն իմ զՏէր Վարդանն[1], որ մեծաւ ջանիւ եւ բազում աշխատութեամբ շինեաց զսուրբ անապատս ի հալալ արդեանց իւրոց, եթէ պարիսպ, եթէ եկեղեցին, եթէ տնտեսատուն, խուցք եւ հիւրատուն, եւ այլ շինութիւնք. եւ ժողովեաց բազում կուսանս ի սմա. եւ հաստատեաց Անապատ, ի ժամանակս Մովսէս կաթողիկոսին, թվին ՌՁ ամին (1631) եւ զմայրն իմ Շնհաւորն, զպապն իմ զՍօլթան պէկն[2], եւ զմամն իմ զՄէհրիզանն, զհօրաքոյրն իմ զկուսակրօն Մարեամ Մայրապետ անապատիս եւ զԵղիսաբեթն. եւ զքորն իմ զկուսակրօն մայրապետ Յուլիտայն, եւ զԳասպարանն. զեղբայրն իմ զՀայկազն, եւ ԶՀԱՐՍՆ ԻՄ ԶԱՆՆԱՅՆ. եւ զորդիս նոցա՝ զՎարդան, զՍօլթան պէկն, զՆազարէթն, զՂեւոնդեան եւ զԵարվէլէն. եւ զդստերս նոցին՝ զՀռիփսիմէն, զկուսակրօն Եսթերն եւ զՄարիամ եւ զայլ ամենայն առու արեան մերձաւորսն իմ. . . ,,:

Բաց ի այս երկուքէն ծանօթ են ինձ Յովհաննէս վարդապետիս գրչէն ուրիշ բազմաթիւ

[1] Տէր Վարդանի գործերու մասին ինչ ինչ հմմտ. նաեւ Սիսեան, էջ 352—53:

[2] Անձնաւորութեանս մասին հմմտ. Սիսեան, էջ 352:

ձեռագիրներ[1], (գրուած 1643—1673 գլխաւորաբար Շոռոթ եւ Նախիջեւան), ուր կ՚անուանէ ինք զինք յաճախ “չնչին բանասէր եւ քարտուղար„, “սպասաւոր բանին„ եւն եւ կը ցուցընէ թէ արդիւնալից դեր մը կատարած է ժամանակին։

Թէ այս տեղ յիշուած Յովհաննէս Վարդապետն ստուգիւ Յովնաթանի՛ հայրն է, ես որ եւ իցէ դժուարութիւն չեմ տեսներ. ժամանակակցութիւնն եւ այլ պարագայք շատ միաբան են։

Այս ըմբռնմամբ կը տեսնուի թէ Յովնաթան պատմական նշանաւոր ցեղէ մը կ՚իջնար, որ առանց տարակուսի իրեն ապագայ գործունէութեան համար աննշանակ չէ եղած։ Ուշադրութեան արժանի է հոս մանաւանդ այն կէտն, որ Տէր Յովհաննէս կը ներկայանայ “բանասէր եւ քարտուղար„ մը, “սպասաւոր մը բանին„ եւ վերջապէս “ծաղկող„ Վարդապետ մը, ուրեմն ուսումնասէր եւ կիրթ անձ մը։ Այսպիսի հօր մը խնամոց տակ ի Շոռոթ բնականաբար կ՚ընդունի Յովնաթան լաւ կրթութիւն մը, առաւելապէս եկեղեցական ուղղութեամբ։

---

1 Հմմտ. Սմբատեանց Մ. եպ.՝ Նկարագիր Երնջակայ Ս. Կարապետի վանից եւ շրջակայից նորին. Տփղիս, 1906, էջ 219—224. յամի 1643 ընդօրինակած է Կոչումն ընծայութեան, 1653ին Հարցմանց Գիրքն Տաթեւացւոյ, 1667ին Պօղոս Նախիջեւանցւոյ Հակաճառութիւնը եւ 1673ին քարոզագիրք մը. Հ. Ալիշանի ալ ծանօթ է իր ձեռքէն Ձեռագիր մը ընդօրինակուած 1652ին (Հմմտ. Սիսական, 351)

5. Արդեամբք ալ, ինչպէս վերագոյն յառաջ բերուած յիշատակարանէն տեսնուեցաւ, Յովնաթան 1682ին տակաւին 20 տարեկան "դպիր" էր. իր որդին՝ Յակոբ բացայայտ կը գրէ թէ դպրութենէն բարձրացած է ապա նաեւ "Սարկաւագութեան" (Չօպանեան՝ անդ, 114).

"Ունէիր հրաման առնել բուրվառըն
Վարուքըն պարկեշտ, գովելի բառըն,
Խոնարհատեսիլ զինչ անմեղ գառըն,
Խոհեմ ատըչ–––աֆ՝ Նաղաշ Յովնաթան":

Բայց ամուսնացած էր Յովնաթան[1] եւ ունեցած որդիներ: Յակոբ Նաղաշի խօսքերէն կ'երեւայ թէ երկու որդի միայն թողուցած է իբր ժառանգ, երբ կը գրէ իր Ողբերգութեան մէջ (էջ 115).

"Սարօտ մընացաք շնորհացդ եւ բանիդ
Ես եւ Յ–ր––Ոի–ն փոքրիկ պատանիդ.
Մենքմիշտ լալով գամք վերայ տապանիդ
Ասեմք. ո՛ւր ես, հա՛յր, Վարպետ Յովնաթան":

Յովնաթան իւր հօրը՝ Տէր Յովհաննէսի խնամոց տակ կ'ընդունի ընտիր կրթութիւն մը,

---

1 Թէ ունէ՞ր Յովնաթան եղբայրներ ալ, այս մասին ճշգրիտ տեղեկութիւն չեմ գտած. Յակոբ Նաղաշ (էջ 115) այսպիսի տողեր գրած է, ուսկից կ'երեւս հետեւցուի բան մը.

Ունիս շատ ծանօթ, եղբարք պատառոյան,
Քո մահըն լուան եւ խելաց անկան:

Իր "ի վերայ Այվազին ջրաղացին" տաղին մէջ (Զօպան. էջ 74) կը գրէ. "Քանզի ես կարողութիւն մեզ հարազատ եղբայր Այվազին," եթէ այս տեղ նաեւ "Հօրեղբայր" հասկնալը չուզենք իմանալ:

այնչափ որչափ կարելի էր պահանջել ժամանակէն։ Հրահանգուած է յատկապէս մայրենի լեզուին մէջ, սորված է գրչութեան արուեստը եւ ատոր հետ զարգացուցած բնատուր ձիրքն նկարչութեան։ Իւր ընդօրինակութիւնն 1682ին, տակաւին քսանամեայ, կը ցուցնէ թէ վարժ եւ գեղեցիկ գրի մը տէր էր։ Թէ երբ տրուած է իրեն Նաղաշ անունը, չենք կրնար որոշ բան մ'ըսել։ Նկարչութեան հետ ունեցած է եւ բանաստեղծական աւիւն մը, որ իրեն արտադրել տուած է բազմաթիւ երգեր։ Այս մասին իւր որդին Յակոբ կը նուիրէ իրեն՝ ի մէջ այլոց, այսպիսի տողեր (էջ 113—114).

Քարտուղար[1] տառից հնոց եւ նորոց[2],
Բանաստեղծ վարդապետ, Նաղաշ Յովնաթան.
. . . . .
Լցեալ շնորհիւ՝ աղբիւր գիտութեան,
Հմուտ ընթերցմանց քերականութեան.
. . . .
Բազում վանորայք եւ շատ միաբան,
Գիտուն կարդացողք եւ աստուածաբան,
Դիմէին առ քեզ հարցանէին բան,
Տայիր պատասխանի, վարպետ Յովնաթան։

Դրուագներ որոնք կը ցուցնեն թէ որչափ ընդարձակ եղած է անոր համբաւն եւ յանկուցիչ։

---

[1] "Քարտուղար" կը կոչէր ինք զինք նաեւ Տէր Յովհաննէս Յովնաթանի հայրը։

[2] Իմա՛ Մեկնող Հին եւ Նոր Կտակարաններու. Գ. Զօպանեան կը հասկընայ՝ "գրաբարի եւ աշխարհաբարի" հմուտ։

Այս դրուատական տողերու մէջ կէտ մը յատկապէս ուշադրութեան արժանի է. բաց ի «Նաղաշ» յորջորջանքէն՝ նաեւ «բանաստեղծ վարպետ» կը կոչուի Ցովնաթան։ Արդեամբք ալ զգայուն բանաստեղծ մ՚եղած է նա, կամ աւելի ճիշդ «աշուղ» մը, որ գիտցած է իւր միշտ ուրախ զգածումները թէ վրձինով եւ թէ գրչով մարմնաւորել. երգած է ձայնով, երգած է սազի եւ քնարի վրայ, երգած է վերջապէս կտաւի վրայ։ Այս կը տեսնուի յայտնապէս իւր տաղերէն իսկ (Հմմտ. էջ 45 եւն)։

Ցովնաթան թէ իբրեւ Նաղաշ եւ թէ իբրեւ Աշուղ շատ շրջած կ՚երեւայ քաղաքէ քաղաք, իւր արուեստներն ի գործ դնելու համար. այս հանգամանքը կը շեշտէ արդէն Ցակոբ, երբ կը գրէ Հօրը համար.

«Երկիր շատ շրջեաց՝ տար յաշխարհ օտար»։

Նոյն տպաւորութիւնը կ՚ընդունինք նաեւ կարդալով իւր տաղերը։ 1682ին զինքը Ագուլիս տեսանք. իւր տաղերէն միոյն մէջ կը գրէր (էջ 38) թէ՝ «Գուրջըստան ղարիպ մընացի։»

Երկար մնացած կ՚երեւայ մանաւորապէս Տփղիս եւ Երեւան։ Տփղիս քաղաքի Գովասանութեան մէջ (էջ 105—106) կը ցուցընէ թէ ժամանակ մը անցուցած է հոն. այս կէտը յայտնի ալ շեշտած է իւր «վասն կանանց» տաղին վերջը (Թ. 647, Թղ. 44ա), զոր չէ առած Զօպանեան իւր հաւաքման մէջ.

> «Կանանոց դարտէն Ցոմնաթանըն
> Գընաց դէպ Թիֆլիզու Խանըն
> Կամի այնտեղ դնել վաթանըն,
> Թող ապառնի կանանց բերնէն» եւն։

Երեւանայ գովքին մէջ ալ կը գրէ. «Ես էլ Երեւան շատ կացայ։»

Թէ գացած է նաեւ մինչեւ Պարսկաստան, Տաճկաստան, նոյն իսկ «Եւրոպայի մի քանի մասերը,» ինչպէս Չօպանեան (էջ 10) հաւանական կը կարծէ, դիւրին չէ ըսել ճշդութեամբ։ Բայց թերեւս չափով մը արդարացընէ ենթադրութիւնս տաղի մը մէկ տողը (էջ 87), թէ՝ «Շէն քաղաք է Ֆըռանգըստան.» (հմմտ. եւ «Աչքերըդ ծով՝ Ֆըռանգի ղուրսանդ գեամի» էջ 49)։ ԺԷ—ԺԸ դարուց Շնորհեցի եւ Ագուլիսցի վաճառականներն, որոնց հետ անպատճառ յարաբերութեան մէջ եղած ըլլալու էր Ցոմնաթան, հրապուրած ըլլան թերեւս իրեն նման «Նաղաշի» մը հետաքրքրութիւնը դէպ ի Իտալիա, Միքէլ-Անջէլոներու եւ Ռափայէլներու հրաշակերտներու այս աշխարհը։

Այս երկարայած շրջագայութեան ժամանակ հարուստ դասակարգի ապարանքներն ու մինչեւ անգամ արքունիքներն իսկ եղած են մասնաւորապէս Ցոմնաթանի իջեւանը։ Յակոբ իւր Ողբերգութեան մէջ (էջ 115) կը գրէր. «Ծանօթ էիր համայն մեծաց իշխանաց։»

Ծանօթ եւ սիրելի եղած է մանաւանդ Տփղիսի արքունիքը։ Հայասէր Վախթանգ Զ. էր այս ժամանակները Վրաց թագաւորն (գահ

ելած 1716ին, † 1737)։ Ասոր եւ Ցօվնաթանի յարաբերութիւնները բարեկամական եղած են։ Այս նկատմամբ առթով մը գրած է Ա. Երիցեան ԱՐՁԱԳԱՆՔի մէջ (1892, թ. 63). «Վախթանգ երեւի այնքան հմուտ էր հայերէնին, որ Թիֆլիզ եկած պանդուխտ Շոռոթեցի Նաղաշ Ցօվնաթանին անդադար հրաւիրում է եղել իւր մօտ սորա հայերէն երգերը լսելու։ Նաղաշ Ցօվնաթանը, որ նկարիչ է եղել եւ թէ բանաստեղծ, իւր մէկ երգի մէջ դէպ ի իւր սիրեկանը՝ գանգատվում է, որ երբ այդ սիրեկանից ստացած նամակին պատասխանն էր գրում, յանկարծ կանչել է նորան Վախթանգ թագաւորը եւ գրութիւնը մնացել է կիսատ։ Ցառաջ ենք բերում Նաղաշ Ցօվնաթանի երգից այդ կտորը, որ ուղղած է բանաստեղծը իւր սիրեկանին (տպ. էջ 47).

Գիր էի գրում քո անուանըն
Միտք էի անում սիրոյ բանըն.
Ետնէս ուղարկեց Վախտանգ խանըն.
Քեզ ո՞նց մոռանամ, զալում զալում,
Ես ո՞նց հեռանամ, զալում զալում»։

Այսպէս երկար պանդխտելէ ետքը դարձած է ժամանակ մը իւր ծննդավայրը՝ Շոռոթ, ուր՝ «յիւրում գաւառի» կնքած ալ է իւր բազմարդիւն 61ամեայ կեանքը «ծերունի» հասակի մէջ — 1722, Հոկտ. 28ին։ Հոն փնտռելու է իւր գերեզմանն, որ յարգուած ըլլալու էր անշուշտ արժանաւոր մահարձանով մը։

* * *

6. Կրկին տեսակէտով կարելի է նկատել Յովնաթանի գործունէութիւնը. իբրեւ բանաստեղծ եւ իբրեւ Նաղաշ-նկարիչ։ Նման արուեստներով փայլած էր երբեմն նաեւ Մկրտիչ եպ. Նաղաշ Ամդեցին։

*Յովնաթան իբրեւ Բանաստեղծ.* Հնութենէն քիչ ունեցած ենք բանաստեղծ հեղինակներ, որոնք երգած ըլլան թուով Յովնաթանէն աւելի տաղեր. այս կէտիս մէջ կարծենք Ներսէս Շնորհալւոյն է առաջնութիւնը։ Բայց ոչ ոք եղած է երգերու նկարագրով Յովնաթանի պէս բազմագոյն. 60էն աւելի են իր մեզի ծանօթ տաղերը, սիրային, երգիծաբանական, խրատական նկարագիրներով։

Այս տաղերն արդեօք հեղինակէ՞ն գրի առնուած են թէ իրմէ երգուած են միայն եւ ուրիշներէն ի գիր դրոշմուած։ Թերեւս փոքր մաս մը վերջին եղանակաւ հասած ըլլան այսօր մեզի, բայց այն ստոյգ է թէ մեծ մասն ինքնին Յովնաթանի մատանց արդիւնքն է, եւ այն դրդմամբ իւր երգասէր սիրականներու։ Այս զգալի է նոյն իսկ տաղերէն. այսպէս իր մէկ տաղին մէջ ուղղելով խօսքն իւր սիրելւոյն կը գրէ (էջ 48).

Ասե՛լ ես. Տետրեր գըրէ՛ տաղով
Ծաղկէ՛ լաջվարդ ոսկի վարաղով.
Գրել եմ, կապել բուլթայ բաղով,
Կ'ուղարկեմ, գալո՛ւմ, գալո՛ւմ
Փափաքե՛մ, գալո՛ւմ, գալո՛ւմ։

Այս տողերու համաձայն կրնանք ըսել թէ ինքն Յովնաթան քովէ քով բերած է իր տաղերէն մաս մը — մերձաւորապէս 1717—1722ի մէջերը։ Տաղերու յօրինման բուն թուականներն անծանօթ են. միայն տաղ մը — ինծի ծանօթներէն — "Գրեմ քարտէս յոյժ ողբալի„ սկզբնաւորութեամբ՝ ունի թուական ՌՃԿԲ (1713) ըստ Յովհ. քհ. Մկրեանի Ձեռագրին (հմմտ. ԼՈՒՄԱՅ, 1899, Ա. էջ 280)։

Ընդունելով ուրեմն թէ Յովնաթան ինքնին ամփոփած է իր տաղերն հաւաքածոյի մը մէջ, կրնանք յուսալիր այս հաւաքման ի խնդիր ելլել։

7. Այս կարգի հաւաքածոներէ երկու օրինակ ունինք մեր Մատենադարանին մէջ, Թ. 537 եւ Թ. 647։ Առաջինը մանր ցուցակագրուած է Հ. Տաշեանի *Ցուցակին* մէջ, որ ԺԸ դարու ընդօրինակութիւն կը համարուի[1]։ Թ. 647 Ձեռագիրն՝ որչափ կ'երեւայ, ծագած է այն նախագաղափարէն, որ եղած էր հիմ Թ. 537ի։ Ձեռագիրս նոտրագիր գրչութեամբ՝ ԺԸ դարու վերջերէն կ'երեւայ. առաջնոյն վրայ առաւելութիւնը կը կայանայ յայնմ որ անոր պակասները կը լրացնէ։

---

[1] Հ. Տաշեան (էջ 1006) 1748էն յառաջ գրուած կը նշանակէ. այս թուականը կրնանք նաեւ 1744 իջեցնել, որ թուականէն Յովհաննէս Ագուլեցին յիշատակագրութիւն մը ունի (Թղ. 130բ)։ Սոյն ձեռագրիս հնութիւնը կը հասնի մինչեւ իսկ Յովնաթանի ժամանակը. բայց յամենայն դէպս 1722էն յառաջ չի կրնար մտածուիլ, քանի որ կայ հոն Յակոբի Ողբերգութիւնը 1722էն։ Կը մնայ գրութեան հաւանական ժամանակ 1725—1740։

Ձեռագրաց մէջ երկու խմբի կը բաժնուին տաղերը՝ Սիրոյ կամ Մէջլիսի եւ ծիծաղական։ Թղ. 537, Թղ. 125ա Տաղերու Ցանկին մէջ կը գրուի.

“Ցանգ գրոյս ի Նախաշ Յովնաթանէ ասացեալ Մէջլիսի կամ Սիրոյ ուրախութեան տաղերի (Ա—ԼԹ)։

Ցանգ վասն Ուրախական եւ ծիծաղական ոտանաւորի ասացեալ ի Նախաշ Յովնաթանէ„ (Խ—ԾԸ)։

Այս բաժանման համաձայն նաեւ բնագրին մէջ (Թղ. 43բ) ԼԹ տաղէն վերջը կը կարդանք.

“Աստ վճարեցաւ ձայնաւոր տաղն ի Նախաշ Յովնաթանին„ (sic). եւ (Թղ. 79ա) դարձեալ՝ “Յայսմ. տեղւոջ աւարտեցաւ ի Նախաշ Յովնաթանայ ասացեալ ծիծաղական ոտանաւորն։„

Ուշադրութեան արժանի է այս տեղ մասնաւորապէս “ձայնաւոր տաղ„ զանազանութիւնն, որով անշուշտ ըսուիլ կ'ուզուի թէ այն 39 տաղերն ունէին նաեւ իրենց եղանակն եւ յատկապէս աշուղական ծնունդ եւ վախճան ունեցած են. պարագայ մը, որ կը զգացուի արդէն “տաղեր կանչել„ եւն յաճախ կիրարկուած բացատրութիւններէն։

Ա. Չօպանեանի հրատարակութեան հիմ ծառայած են յատկապէս մեր Մատենադարանի յիշեալ երկու Ձեռագիրները. տեղիս տեղիս

նաեւ թ. 412 եւ թ. 514 առնուած են նկատողութեան։

Ցաւով տեսանք որ Չօպանեան ամբողջութեամբ չէ ուզած տալ Յովնաթանեան Հաւաքումն (գոնէ որչափ որ ծանօթ էր), այլ այնպիսիները միայն հիւրընկալած է իր հրատարակութեան մէջ, որոնք գեղարուեստական գոյն մը ցոյց տուած են վրանին։ "Երգիծական կտորները տասնէն աւելի են, կը գրէ Չօպանեան, ասոնց մէջ կան մէկ քանիներ, այնքան կոպիտ ու անհամ, որ աւելորդ համարեցայ հրատարակել զանոնք, նկատելով որ այդ այնքան երկար որքան գռեհիկ կտորները բանաստեղծի աւելի վնասել կարող են" (էջ 13)։ Ստոյգ է, դուրս ձգուած կտորներէն (19 հատ) շատերն այս նկարագրով են, բայց միեւնոյն ժամանակ անչափ հետաքրքրական են անոնք ազգագրական տեսակէտով. եւ այս կողմանէ կրնային Յովնաթանեան հաւաքման արժէքը բարձրացնել՝ իբրեւ ազգագրութեան աղբիւր։ Օրինակի համար "Տաղն Վասն կանանց։"

Պէտք էր այս տեսակէտով եւ այն նկատի առնուիլ, որ բոլոր տաղերը բանաստեղծէն մէկ ժամանակի մէջ արտադրուած չեն. հետեւաբար կրնային այնպիսիք իբրեւ Յովնաթանի առաջին փորձերն ընծայուիլ։ Անծանօթ մնացած են հրատարակչին նաեւ ԼՈՒՄԱՅի մէջ լոյս տեսած կրկին տաղերը։

8. Ամփոփ գաղափար մը կազմելու համար Յովնաթանեան Հաւաքման վրայ, այս տեղ կու

***տամ այբուբենական ցանկ մը այն ամէն տաղերուն, որոնք ձեռագիր կամ տպագիր գրուածքներու մէջ Յովնաթանի կը համարուին, նշանակելով միեւնոյն ժամանակ թէ ուր կը գտնուին անոնք կամ ուր հրատարակուած են, վստահ թէ անօգուտ պիտի չնկատուի այս։***

1. *Ամենօրհնեալ Աստուածածին*
   *Տաճար եւ Մայր անճառ Բանին.*

“***Աղօթք եւ տաղ գովասանութեան առ Ս. Աստուածածինն***„. ***Ծանօթ է՝ թ.*** 537, 39***ա***, ***թ.*** 647, 37***ա***։ — ***Հրտ. Ա. Չօպանեան, էջ*** 82—85։

2. *Ամէն առաւօտ կու գաս ծաղկներով*
   *Երեսօքդ նըման չէմնի ղամարայ.*

“***Տաղ սիրոյ***„. ***Ծանօթ է՝ թ.*** 537, 30***ա***, ***թ.*** 647, 28***բ***։ — ***Հրտ. Ա. Չօպանեան***, 55—56։ ***Գաղղ. թարգմ.*** Les trouvères Arméniens, 2. ed. p. 245—236.

3. *Այսօր եղեւ պայծառ արեւ*
   *իմ նազելի, նոր սիրելի.*

“***Տաղ սիրոյ***„. ***Ծանօթ է՝ թ.*** 537, 32***ա***, ***թ.*** 647, 30***բ***։ — ***Հրտ. Ա. Չօպանեան***, 58—59։

4. *Այսօր ինձ խիստ պատուական է*
   *Սիրտս ուրախութիւն կ'անէ.*

“***Տաղ սիրոյ***„. ***Ծանօթ է՝ թ.*** 537, 28***բ***, ***թ.*** 647, 27***ա***։ — ***Հրտ. Ա. Չօպանեան***, 54—55։

5. *Այսօր խիստ օր է ուրախութեան*
   *Շնորհաւոր մեծ քարեկենդան.*

«**Տաղ բուն բարեկենդանի**». **ծանօթ է՝ թ.** 537, 42**ա**, **թ.** 647, 40**ա**։ — **Հրտ. Ա. Չօպանեան**, 91—93։

6. *Այսօր ծագեցաւ նոր արեւ*
*Իմ սիրելին եւ ինձ բարեւ.*

«**Տաղ սիրոյ**». **ծանօթ է՝ թ.** 537, 16**ա**, **թ.** 647, 15**բ**։ — **Հրտ. Ա. Չօպանեան**, 40—41։

7. *Այսօր տօն է ծննդեան, աւետիս,*
*Տեառն մերոյ եւ յայտնութեան աւետիս.*

«**Յաւետիս ջրօրհնեաց**». **ծանօթ է՝ թ.** 537, 77**ա**, **թ.** 647, 73**բ**. (**տարբեր նոյն սկզբնաւորութեամբ ուրիշ տաղերէն**)։

8 *Այսօր ցնծամք պարելով.*
*Խըմենք գինի խնդալով.*

«**Տաղ ի վերայ սեղանոյ**», **ծանօթ է՝ թ.** 537, 10**ա**, **թ.** 647, 10**ա**, **թ.** 369, 26**բ եւ** 78**ա**, **թ.** 412, 57**ա**, **թ.** 514, 142**ա**, **Ձեռ. Էջմ. թ.** 604։ — **Հրտ. Յ. Յարութիւնեան՝** ՄԱՍԻՍ, 1885, **էջ** 657։ **Անդ**, 1908, **թ.** 12—13, **էջ** 244։ **Ա. Չօպանեան**, 66—68։

9. *Առաւօտուց գամ քո տեսուն, նազանի,*
*Ըռահմ արա, զալում քեաֆիր, ամա́ն աման.*

«**Տաղ սիրոյ**». **ծանօթ է՝ թ.** 537, 33**բ**, **թ.** 647, 32**ա**։ — **Հրտ. Ա. Չօպանեան**, 86—87։

10. *Առաւօտուց մէկ մի տեսայ զարդարած*
*Դու իմ խելքըն տարար, ես չունիմ ղարար.*

«**Տաղ սիրոյ**». **ծանօթ է՝ թ.** 537, 38**ա**, **թ.** 647, 36**բ**։ — **Հրտ. Ա. Չօպանեան**, 65—66։

11 *Ասել ես թէ զարնան վախթը*
*Սիրական, ամա́ն.*

“**Տաղ սիրոյ**„. **ծանօթ է՝ թ**. 156, 15**ա**։ — **Հրտ**. **Ա**. **Չօպանեան**, ԱՆԱՀԻՏ, **Դ**. 59, **եւ Նաղաշ Յովնաթան**, **էջ** 89—90։ — **Նաեւ գաղղ**. **թարգմանուած**՝ Les trouvères Arméniens, 2. ed. p. 243—244

12. *Գարուն եղեւ քաղցըր խօսի բըլբուլըն*
*Ձեր պաղչի մէջըն բացվել ա սմբուլըն*.

“**Տաղ սիրոյ**„. **ծանօթ է՝ թ**. 537, 22**բ**, **թ**. 647, 21**բ**։ — **Հրտ**. **Ա**. **Չօպանեան**, 49։

13. *Գարուն որ եղեւ ամառյն ապրիլի*,
*Ցանկարծ քեզ տեսայ իմ նոր սիրելի*.

“**Տաղ սիրոյ**„. **ծանօթ է՝ թ**. 537, 35**բ**, **թ**. 647, 34**ա**։ — **Հրտ**. **Ա**. **Չօպանեան**, 62—63։

14. *Գեղեցիկ պատկեր ես դու իմ պատուելի*.

“**Տաղ սիրոյ**„. **ծանօթ է՝ թ**. 537, 31**բ**, **թ**. 647, 30**ա**։ — **Հրտ**. **Ա**. **Չօպանեան**, 57—60։

15. *Գինի որ խմենք անուշ է*
*խմենք անենք ուրախութիւն*.

“**Տաղ ուրախութեան**„. **ծանօթ է՝ թ**. 537, 73**բ**, **թ**. 647, 72**ա**։

16. *Գովելի ծաղիկ ես դու*
*ի մէջ ծաղկանցըն՝ վարդ թուշխար*.

“**Տաղ սիրոյ**„. **ծանօթ է՝ թ**. 537, 27**բ**, **թ**. 647, 26**ա**։ — **Հրտ**. **Ա**. **Չօպանեան**, 53—54։

17. *Գովեմ սրտիւ ուրախական*
*Թիֆլիզ քաղաքըն պատուական*.

“**Գովասանք Գուրջստանի**„. **ծանօթ է՝ թ**. 537, 100**ա**, **թ**. 647, 86**ա**։ — **Հրտ**. ՀԱՅԵՐԳ **Տեւկանցի**, 122—123։ **գ**. **քհ**. **Աղանեան**՝

ԼՈՒՄԱՅ 1899, Ա. 280—282։ Ա. Չօպանեան, 105—106։

18. *Գլենխիկ է տոհմ եւ ցեղ*
*Քոսայ է մօրուք եւ բեղ.*

"Տաղ ի վերայ խակակիրթ աբեղայի որ առ Յովնա-թան գրեալ էր ուսանաւոր եւ նա զայս պատաս-խան գրեաց". ծանօթ է՝ Թ. 537, 48բ, Թ. 647, 46ա։

19. *Գրեմ քարտէս յոյժ ողբալի*
*Զքանս հակիրճ եւ դիւրալի.*

"Վասն Վարդան ժամահարին, որ վասն իւր քնափ լինելոյն՝ եկեղեցւոյ որձակն սպանեց, ասելով թէ ինչ բան ունես հետ օտար հաւերի"։ — Հրտ. Գ. քհ. Աղանեան, ԼՈՒՄԱՅ, 1899, Ա. 276—280։

20. *Գրեցի անուն վասն Թումանուն*
*Կարդալով զանուն, փարգալու քանուն.*

"Տաղ վասն Ագուլեցի Թումանին որ Խ. ամաց սկսաւ կարդալ". ծանօթ է՝ Թ. 537, 49բ, Թ. 647, 47բ։

21. *Գրէ եկին էշի քարվան*
*Մեր մոնթերի վըրայ փալան.*

"Վարք հաւասար մոնթերի". ծանօթ է՝ Թ. 537, 51բ, Թ. 647, 49ա։ — Հրտ. Ա. Չօպանեան, 97—102։

22. *Ծլեալ ես այվանն*
*Դու կանես սէյրան.*

"Տաղ սիրոյ". ծանօթ է՝ Թ. 537, 26ա, Թ. 647, 25ա։ — Հրտ. Ա. Չօպանեան, 71—72։

23. *Եւ վնամք պաղչէ նստեմք*
*Չորս բոլորըն շարած վարդի·*

**"Տաղ սիրոյ". ծանօթ է՝ թ.** 537, 23**բ**, **թ.** 647, 22**ա**։ — **Հրտ. Ա. Չօպանեան**, 50—51։

24. *Եկայք այսօր ժողովեցէք ընկերք միաբան·*

**"Տաղ ուրախութեան սեղանոյ". ծանօթ է՝ թ.** 537, 9**բ**. **թ.** 647, 9**բ**, **թ.** 369, 30**ա**, **թ.** 412, 103**ա**։ — **Հրտ. Յ. Յարութիւնեան, ՄԱՍԻՍ**, 1885, **էջ** 658։ **Ա. Չօպանեան**, 90—91։

25. *Եկայք այսօր որդիք մարդկան*
*Ցնծացուք ձայնիւ միաբան·*

**"Տաղ բուն բարեկենդանին". ծանօթ է՝ թ.** 537, 11**ա**, **թ.** 647, 11**ա**, **թ.** 369, 29**բ**, **թ.** 493, 79**բ**, **թ.** 514, 142**ա**։ — **Հրտ. Ա. Չօպանեան**, 70—71։

26. *Իմ եարն նըստել դամով*
*Լեզուն քանց շաքար համով·*

**"Տաղ սիրոյ". ծանօթ է՝ թ.** 537, 13**ա**, **թ.** 647, 12**բ**։ — **Հրտ. Ա. Չօպանեան**, 35—36։

27. *Լուսնի նըման պայծառ երեսդ բոլորած·*

**"Տաղ սիրոյ". ծանօթ է՝ թ.** 537, 36**բ**, **թ.** 647, 35**ա**. — **Հրտ. Ա. Չօպանեան**, 63—64։

28. *Կամիք զովել դուք Երեւան*
*Մարդիկն զալում կ'երեւան·*

**"Գովասանութիւն Երեւանայ քաղաքին". ծանօթ է՝ թ.** 537, 47**բ**, **թ.** 647, 45**ա**։ — **Հրտ. Ա. Չօպանեան**, 95—96։

29. *Կանչեմ Ֆիդան ահուզարով*
*Դու ինձ Հը չես տալ բարով·*

«Տաղ սիրոյ». Ծանօթ է՝ Թ. 537, 26բ, Թ. 647, 25բ, Թ. 156, 16ա։ — Հրտ. Ա. Չօպանեան, 69–70։

30. *Կատուն մեռաւ, ափսոս ու վախ*
*Մըկներն այսօր խիստ են ուրախ.*

«Տաղ ի վերայ կատուի, զոր մկներն տանին թաղել». Ծանօթ է՝ Թ. 412, 60ա։ — Հրտ. Մ. Մինասաբեանց, Քնար Հայկական, Յաւելուած, 45—46։ Ա. Չօպանեան, 79—80։

31. *Հայր անսկիզբն բարեխնամ մարդասէր*
*Հանգոյ զննջեցեալսն մեր.*

«Ղափանցի երէցի արած պաշտօն, որ ասաց». Ծանօթ է՝ Թ. 537, 74բ։

32. *Մանուշակ քամաւշայ սըմբուլ*
*քաղցըր զարնան ունիս խաբար.*

«Տաղ սիրոյ». Ծանօթ է՝ Թ. 537, 30բ, Թ. 647, 29բ։ — Հրտ. Ա. Չօպանեան, 56—57։

33. *Յամենայն ժամ տացուք փառս*
*Տեառն Աստուծոյ ապենիազին.*

«Տաղ ի վերայ Այվազին ջրաղացին». Ծանօթ է՝ Թ. 537, 7բ, Թ. 647, 7բ։ — Հրտ. Ա. Չօպանեան, 74—75։

34. *Յայտնեցաւ զարուն հարաւ հնչեաց,*
*ծառըն կանանչացեալ ծաղկեաց.*

«Տաղ սիրոյ». Ծանօթ է՝ Թ. 537, 24բ, Թ. 647, 23ա։ — Հրտ. Ա. Չօպանեան, 51—52։

35. *Յայտնի երեւեցաւ քաղցրաշունչ զարուն,*
*Ծլէք-զօվղ եւ սէյրան, եղբարք.*

«Տաղ ուրախութեան». Ծանօթ է՝ Թ. 537, 7ա (թերի). Թ. 647, 6բ։

36 · *Յանկարծ լուայ աւետեաց ձայն,*
*Թէ ուրախ լեր դու Յովսաթան.*

«Տաղ ի վերայ մանուկին». Ծանօթ է՝ Թ. 537, 46բ, Թ. 647, 44բ։ — Հրտ. Ա. Զօպանեան, 93—94։

37 · *Յանմարմնոց վերօրհնեալ*
*Մարիամ կոյս գովեալ.*

«Տաղ առ Տիրամայրն». Ծանօթ է՝ Թ. 537, 41ա, Թ. 647, 39ա։ — Հրտ. Ա. Զօպանեան, 72—74։

38 · *Յարաժամ մատուցուք*
*Տեառն Աստուծոյ գոհութիւն.*

«Տաղ ուրախութեան սեղանոյ». Ծանօթ է՝ Թ. 537, 12ա, Թ. 647, 11բ։ — Հրտ. Ա. Զօպանեան, 85—86։

39. *Յաւուր միում, որ էր մեզ Նոր կիրակի.*

«Յորժամ ըմպէք զանուշ գինին եւ լինիք հարբած զայս տաղս ասացէք (անանուն). Ծանօթ է՝ Թ. 537, Թղ. 99ա։

40. *Յաւուրս զարնան ժամանակին*
*Փթթեալ ծաղկեցաւ այգին.*

«Տաղ ուրախութեան». Ծանօթ է՝ Թ. 537, 6ա, Թ. 647, 4բ, Թ. 514, 140ա։ — Հրտ. Ա. Զօպանեան, 77—79։

41 · *Յորժամ զայ պայծառ զատիկն Հայոց*
*Մեծ աւետիս տամ ծերոց եւ տղայոց.*

«Տաղ ի վերայ Զատկին Հայոց». Ծանօթ է՝ Թ. 537, 3ա, Թ. 647, 2ա, Թ. 412, 97բ։ — Հրտ. Ա. Զօպանեան, 103—104։

42. *Յորժամ եղեւ բարեկենդան*
*Եկեղեցին բերին սեղան.*

"*Տաղ վասն Հաւին, զոր բարեկենդանն Տէր Գրիգոր մէկ սեղանի հաւ ետուր ժամահարին, թէ մուրթջամ չինէ. ժամահարն առեալ գնաց գինովցաւ, հաւն գողանալ ետուր*". *Ծանօթ է՝ թ.* 537, 62*ա*, *թ.* 647, 59*բ*։

43. *Յորժամ եղեւ գարուն արեւ ծագեցաւ*
*Հարաւ հողմըն փչեաց սառն հալեցաւ.*

"*Տաղ ուրախութեան եւ սեղանոյ*". *Ծանօթ է՝ թ.* 647, 5*բ*, *թ.* 412, 99*բ*, *թ.* 369, 30*բ*։ — *Հրտ. Յ. Յարութիւնեան՝* ՄԱՍԻՍ, 1885, *էջ* 657, *նաեւ Անդ*, 1908, *էջ* 352. *Մ. Միանսարեանց՝ Քնար Հայկական*, 387 (*ընծայուած՝ Աշըգ Ադամ Նաղաշովի*), *Ա. Չօպանեան*, 107—109։ — *Գաղղ. Թարգմ.* Les trouvères Armén. 2. ed. p. 246—247.

44. *Յորժամ որ մարդասէրն Աստուած*
*պարգեւեաց մեզ զայս բարիս.*

"*Տաղ ուրախութեան ի վերայ սեղանոյ*". *Ծանօթ է՝ թ.* 537, 4*ա*, *թ.* 647, 3*ա*, *թ.* 412, 14*բ*։ — *Հրտ. Ա. Չօպանեան*, 87—88։

45. *Նազելի ծաղիկ, տամ քեզի բարեւ*
*եռ բաց երեսիդ վերայ չարշաւըն.*

"*Տաղ սիրոյ*". *Ծանօթ է՝ թ.* 537, 25*բ*, *թ.* 647, 24*ա*։ — *Հրտ. Ա. Չօպանեան*, 52—53։

46. *Նման ես դու կարմիր վարդի*
*Ատամներդ շար մարգարտի.*

"*Տաղ սիրոյ*". *Ծանօթ է՝ թ.* 537, 15*բ*, *թ.* 647, 14*բ*։ — *Հրտ. Ա. Չօպանեան*, 39—40։

47. *Նոր զարուն է հնչեաց հարաւ*
*Իմ սիրելույն խիստ եմ ծարաւ.*

**“Տաղ սիրոյ„. ծանօթ է՝ թ. 537, 18ա. թ. 647, 17ա: — Հրտ. Ա. Չօպանեան, 42—45:**

48. *Նոր ծաղկեցաւ այգին եկել է զարուն*
*Էր իմ սիրտս կ'անես եարալու արիւն.*

**“Տաղ սիրոյ„. ծանօթ է՝ թ. 537, 17ա, թ. 647. 16բ: — Հրտ. Ա. Չօպանեան, 41—42:**

49. *Նոր տեսայ մէկ նոր սիրելի*
*Աչքերն որպէս հայելի.*

**“Տաղ սիրոյ„. ծանօթ է՝ թ. 537, 14ա, թ. 647, 13բ: — Հրտ. Ա. Չօպանեան, 36—39:**

50. *Նստիմք ի մէջլիս հարք եւ եղբարք*
*եւ մեծ պարոնայք.*

**“Տաղ ուրախութեան„. ծանօթ է՝ թ. 537, 8բ, թ. 647, 8բ, թ. 412, 101բ, թ. 514, 140բ, թ. 490, 80բ: — Հրտ. ՃՌԱՔԱՂ, 1860/61, էջ 216. Քնար Հայկական, 427. Կ. Կոստանեանց՝ Մկրտիչ Նաղաշ եւ իւր տաղերը, 32—34 (ընծայած Մ. Նաղաշի), Ա. Չօպանեան, 81—82:**

51. *Ով Շահվելունց Տէր Աբրահամ*
*Քանց լվացած զազար անհամ.*

**“Ոտանաւոր ի վերայ Շահվելունց Տէր Աբրահամին„. ծանօթ է՝ թ. 537, 58ա, թ. 647, 55ա:**

52. *Ով որորմելիք խեղճ կանանիք,*
*Մեծ պասն կու գայ, ինչ կ'անիք.*

**“Տաղ վասն կանանց զոր նեղութիւն կրեն ի ձեռաց մեծ պասին եւ ճահրակի„. ծանօթ է՝ թ. 537, 43բ, թ. 647, 42ա:**

53. *Ով Տէր եղբայր իմ պատուական*
*Երգող բանի շարադրական.*

"Պատասխանի Թղթոյն խակակիրթ աբեղայի միոյ որ գովաբանել է Ս. Կարապետոյ գեղջուկ բառիւ". Ծանօթ է՝ Թ. 537, 66բ, Թ. 647, 63բ։

54. *Ում նման ես, արեգական,*
*Ղօխունիտան վեր մանամեաստան.*

"Տաղ սիրոյ". Ծանօթ է՝ Թ. 537, 29ա, Թ. 647, 28ա։

55. *Ուստի՞ կու գաս, քաղցր բլբուլ*
*Քեզի բարով, ես քեզ եմ դուլ.*

"Տաղ սիրոյ". Ծանօթ է՝ Թ. 537, 32բ, Թ. 647, 31բ։ — Հրտ. Ա. Չօպանեան, 59—60։

56. *Պատկեր մի տեսայ լուսնի նըման*
*Աչքերըն պայծառ արեգական.*

"Տաղ սիրոյ". Ծանօթ է՝ Թ. 537, 20ա, Թ. 647, 19ա։ — Հրտ. Ա. Չօպանեան, 45—49։

57. *Վարք եւ յիշատակ գրեմ տաղտկալի*
*Մոնթերին մանկանց տաճարի.*

"Վարք Շուռութոյ տիրացու տխմար տղայոց. վերին դասու". Ծանօթ է՝ Թ. 537, 50ա, Թ. 647, 48ա։

58. *Վերջին վկայ կոյս Թամարիա*
*յաղթող բանսարկուին:*

"Տաղ սուրբ կուսին Թամարիոյ Շախկերտացւոյ". Ծանօթ է՝ Թ. 537, Թղ. 78ա, Թ. 647, Թղ. 74բ—75բ։ Այս Տաղիս տներու սկզբնատառք կը յօդեն ՎԱՐԴԱՆ, որ թերեւս կարծել տայ թէ հեղինակն ըլլայ համանուն անձ մը։ Այսպէս միտեալ էի ընդունելու եւ ես, բայց տառք կը

հակառակին Ձեռագիրը, որոնք այս տաղն ալ Ցօփնաթանեան Հաւաքածոյին մէջ կը զետեղեն իբրեւ վերջին տաղ եւ ասկէ վերջը կը ծանօթագրեն թէ հոս կ'աւարտի Հաւաքածոն։ Կարելի է ենթադրել թէ Ցօփնաթան հոս յօդած ըլլայ իւր պօղին՝ Վօրգօնօյ անունը, որ ինձի շատ հաւանական կ'երեւայ։ Թոմաչէա (ըստ այլոց Թումամ կամ Կատարեալ) Շահկերտացի կոյսն նահատակուած է ըստ Զաքարիա Սարկաւագի (տպ. Վաղարշապատ. 1870, Բ, էջ 128—131 = Նոր Վկայք, տպ. Անդ. 1903, էջ 521—524) յԵղիվարդ 1690/91ին, փախչելով Երեւանէն։ Ցօփնաթան թերեւս այս տեղ գտնուած ժամանակ երգած ըլլայ։ Տաղս անծանօթ մնացած է Նոր վկայից հրատարակիչներուն։ Առթիւս պէտք եմ ըսել նաեւ, որ այս տաղիս ազդեցութեան տակ (տեղ տեղ բառական իսկ ընդօրինակելով) երգած է Տէր Պօղոս իւր տաղն Խանում վկայուհւոյն վրայ († 1755). հմմտ. Նոր Վկայք, էջ 562—64։

59. *Տեսէք եղբարք թէ այս ինչ բան է.*
*Որպիսի կարգ եւ սահման է.*

“Տաղ ծիծաղական վասն կանանց„. ծանօթ է՝ Թ. 537, 70ա, Թ. 647, 67բ։

60. *Տէր Աբրահամ շինեց բաղչայ*
*Առանց համալ, առանց աղչայ.*

“Տաղ ի վերայ Տէր Աբրահամին բաղչին, զոր շինեալ էր եկեղեցւոյ փարակին„. ծանօթ է՝ Թ. 537, 76ա, Թ. 647, 72բ։

61. *Տէր Աստուածատուր ասաց ինձ մի բան*
*Թէ եկեալ է խիստ լաւ բազկաթան.*

“Տաղ վասն հոտեալ փիս չկալուկ բազկաթանին„. ծանօթ է՝ Թ. 537, 56ա, Թ. 647, 53բ։

62․ *Տէր ողորմեա՛, Տէր յիշեա՛,*
*Կարմիր գինի ճերմակ շիշայ․*

Յորդորակն "Այսօր ցնծամք պարելով" տաղին․ առանձին կը գտնուի Թ․ 514, 142ա։

63․ *Փառք եւ գոհութիւն տամք ստեղծողին․*

"Խրատ պիտանի վասն հոգւոյ"․ ծանօթ է՝ Թ․ 537, 94ա։ ․ Հրտ․ Ա․ Չօպանեան, 75—77։

64․ *Քաղաք ես Խութայիս Մոսքով*
*խելքըս տարար անուշ խօսքով․*

"Տաղ սիրոյ"․ ծանօթ է՝ Թ․ 537, 37ա, Թ․ 647, 35բ։ — Հրտ․ Ա․ Չօպանեան, 64—65։

65․ *Քանի կանչեմ ամա՜ն, ամա՜ն*
*Ես չունիմ ղարար ․․․*

"Տաղ սիրոյ"․ ծանօթ է՝ Թ․ 537, 34ա․ Թ․ 647, 33ա։ — Հրտ․ Ա․ Չօպանեան․ 61—62։

66․ *Օրհնեսցի չորեքանկիւնի տունս*
*խեցեղէն, պղնձեղէն․*

"Օրհնութիւն գեղացի երեցի"․ ծանօթ է՝ Թ․ 537, 75բ։ — Հրտ․ Մ․ Միանսարեան՝ Քնար հայկական, Յաւելուած, 46։

9․ Բաց ի այս յիշուածներէն, կան դեռ տաղեր ալ, որոնք շփոթմամբ ընծայուած են իրեն․ շփոթութիւնս տեղի ունեցած է յատկապէս Նաղաշ յորջորջման հետեւութեամբ, որ սեպհական էր նաեւ Բանաստեղծ Մկրտիչ Նաղաշի։

Կը յիշեմ այսպիսիներէն հետեւեալները․

1․ "Տաղ ի Նաղաշ Յովնաթանէ ասացեալ․ Երազ է եւ սուտ, եղբարք․․․" (Հմմտ․ Թ․ 412, Թղ․ 127ա․ այսպէս տպուած նաեւ Հ․ Յ․ Էկի-

նեանէ ՄԱՍԻՍ, 1885, էջ 208) որ ծանօթ է արդէն Մ. Նաղաշի անուամբ Հին Ձեռագրաց մէջ եւ շատ անգամ հրատարակուած է՝ սկսեալ 1667էն։

2. «Տաղ Ղարիպի, Նաղաշ Յովնաթանի ասացեալ. Ղարիպի կեանքն է լալի...» (Հմմտ. Դադեանի Ձեռագրաց Ցուցակն, էջ 50, կազմուած Յ. Թոփչեանէ) որ ընդհանրապէս Ձեռագրաց մէջ անանուն է եւ ոմանցմէ համարուած է Մ. Նաղաշի։

3. Յ. Յարութիւնեան ՄԱՍԻՍի մէջ հրատարակելով Յովնաթանի տաղերէն քանի մը հատ, իբրեւ չորրորդ տաղ կու տայ.

> Ի միասին ամենեքեան
> Եկայք եղբարք իմ սիրական...

որ ինչպէս արդէն տներու սկզբնատառք կը ցուցընեն, չէ Յովնաթանու, այլ ՅԱԿՈԲի, այսպէս յայտնի կը տեսնուի նաեւ մեր Թ. 412, Թղ. 88բ տաղարանէն, ուր խորագիր կը կրէ. «Տաղ Յակոբայ վարդապետէ Շամախեցւոյ ասացեալ ի վերայ ծաղկանց» (իսկ Թ. 156, Թղ. 71ա. «...ի վերայ Մաճլիսի»)։

* * *

10. Ինչպէս Ա. Չօպանեան կը դիտէ, Յովնաթանի բանաստեղծութիւնները կը բաղկանան երեք շարքերէ. Կրօնական ու խրատական տաղեր, երգիծական (կամ «ծիծաղական») քերթուածներ, եւ սիրոյ ու խրախճանքի երգեր։

Իւրաքանչիւր շարքին Նկարագիրն գեղեցիկ գծած է Հրատարակիչը. Ա. շարքը կ'ընծայէ “Հայոց խրատական բանաստեղծութեան ամէնէն աղուոր էջերէն մէկը՝„ իր կոկիկ գրուածքովը ու լեզուովը, ժողովրդական համեղ պատկերալից ոճովը եւ զգացման քնքշութեամբը (էջ 12)։ Օրինակ կարելի է առաջարկել այս շարքէն՝ Առ Տիրամայրն (էջ 72—74) եւ մանաւանդ “Խրատ պիտանի վասն հոգւոյ„ (էջ 75—77) տաղերը։

Երկրորդ շարքը ցոյց կու տայ “սրամտութիւն մը որ գեղջուկ ու պարզուկ է թէեւ, բայց համեղ է եւ մերթ ուժեղ ու կծու, որոնք կրնան նկատուիլ հայ նոր երգիծական բանաստեղծութեան նախափորձերը, Աբովեանէն իսկ յառաջ„ (էջ 15)։ Այս շարքը, ինչպէս կանխեցինք ըսել, հրատարակութեանս մէջ ամբողջութեամբ չէ ներկայացուած։ Հրատարակուածներէն իբրեւ օրինակ կրնանք յիշել “Գովասանութիւնն Երեւանայ քաղաքին„ (էջ 95—96), “Վարք հաւասար մոնթերին„ (էջ 97—102), “Տաղ ի վերայ մածունի„ (էջ 93—94) եւն։

Երրորդ շարքին մէջ ցոյց չի տար Յովնաթան Քուչակի չափ “ցեղային ինքնատպութիւն„. տոգորուած է նա՝ նման Սայաթ Նովայի՝ աւելի “պարսիկ ու թուրք բանաստեղծութեան ազդեցութեամբ,„ եւ որչափ ալ խորքին մէջ հայկական շեշտն զգալի ըլլայ, իր ձեւին մէջ մահմեդական գեղեցկութեանէն շատ տարբեր կը մնեն (էջ 13)։ Տաղերուն մեծագոյն մասը այս շարքին կը վերաբերի, եւ ընդհանրապէս յա-

ջող են թէ գեղեցկութեամբ լեզուի եւ ոճի, եւ թէ բազմագունութեամբ գաղափարներու եւ զգացման։ Հիանալի են խրախճանքի երգերէն մանաւանդ Բարեկենդանի (էջ 70, 91), «Ի վերայ Հայոց Զատկին» (էջ 103) եւ «Ի վերայ Գարնան» (էջ 107) տաղերն, որոնք զուտ հայ սրտի արտադրութիւններ կրնան համարուիլ, հայ ուրախ կեանքի գարնան մէջ երգուած։

Փոքրիկ ճաշակ մը այս շարքէն.

«Ով եղբարք, նստեալ էք ծաղկեալ ծառի տակ,
Ձեռներիդ է գինի կարմիր ու յըստակ.
Գինոյ մէջն անկանի ծաղիկ ըսպիտակ,
Խմենք, եղբարք, գինի, մեզ անուշ լինի,
Ածէք, խըմենք գինի, բանըն Աստուած չինի։

Նոր գարուն, նոր արեւ, Զատիկ շնորհազարդ,
Այսուհետեւ բացվի մանուշակ ու վարդ,
Ձայն պուլպուլին տատրակին լըսէ ամէն մարդ,
Խըմենք, եղբարք . . .

Ա՛յս ուրախ շեշտն է ամէնուն մէջ եւ նո՛յն սահուն ոճն ու յստակութիւնը՝ տիրողը։

Յովնաթանի լեզուն ռամկախօս է ընդհանրապէս՝ գրաբարի հզօր ազդեցութեաններքեւ։ Իւր ռամկախօսութիւնք կը կրեն առաւելապէս Երեւանեան բարբառին նկարագիրը, կամ մէկ խօսքով՝ այն բարբառն, որ ապա Աբովեանի գրչի տակ յաղթանակող հանդիսացաւ։ Գրաբարէն ու աշխարհաբարէն գիտցած է օգտուիլ Յովնաթան այնչափ, որչափ կարեւոր էր իւր տաղերուն ներդաշնակութիւն մը զգեցնելու հա-

մար։ Ասոր արդեամբք է որ իւր տաղերն նաեւ իբրեւ տաղաչափութիւն ունին առանձին շնորհք մը, պահանջուած երաժշտական ելեւէջքն ու ներդաշնակութիւնը։[1]

Դժբախտաբար այս նկատմամբ ընդօրինակողք շատ ճաշակաւոր եւ իրազէտ չեն գտնուած. ձեռագրաց մէջ երբեմն բառերն աղաւաղուած են եւ երբեմն չափերն, որով ստանաւորի սահուն ընթացքը տուժած է զգալապէս։ Զօպանեան այսպիսի խաթարումները ջանացած է համեմատութեամբ ձեռագրաց վերականգնել եւ այս յաջողած է իրեն ընդհանրապէս։[2]

---

1 Չափերու թիւը պէս պէս է. կը տեսնուին մերթ 3—3, 3--4, 4—4, 4-4-3, 4-2-5, եւ մերթ 5-4-5 5-5-5, նաեւ 5-2-4-5 եւն։ Բայց դժուարին է ոմանց ճիշդ չափն գտնել, զ. օր. ԻԹ տաղին (էջ 74)։

2 Ինչ ինչ դոյզն անճշդութիւնք նկատի չեն առնուիր ի հարկէ. օրինակ Գ տաղն (էջ 39) յօրինուած է 4—4 չափով, ըստ այսմ պէտք է կարդալ

Նըման ես գօ— կարմիր վարդի,
Ատամներըդ շար մարգարտի,
Սիրտ երել ես գօ— շատ մարդի,
Բոլոր սուրաթ ինձ արիր մաթ։

Առաջին տողին գօ—ն ունին արդէն ձեռագիրք, երրորդ տողին մէջ ալ աւելցնելու է։ Նոյնպէս էջ 81, տող 7 եւ 8 կարդալու է 5—4—5 չափով այսպէս.

Կարմներըդ բաց, եկ խաբար բեր,
մեզ ուրախացրու,
Սուրահիքըն տար, շուշէքըն լից,
բեր թաս խըմցրու։

Այսպէս է գոնէ Ձեռագրաց մէջ, մինչ Զօպանեան ունի "Կարասըն . . . ուրախացու . . . խըմեցու"։

Կրնային ըլլալ նման դիտողութիւններ նաեւ ֆոնէթիկայի եւ բառարանի մասին, բայց աւելորդ են մանրամասնութիւններ այս տեղ։

11. *Յովնաթան իբրեւ նկարիչ:* Բանաստեղծութենէ աւելի օժտուած կ'երեւայ Յովնաթան նկարչի ձիրքերով, եւ նուիրուած այդ գեղեցիկ արուեստին:

Այս արուեստին սկզբնական տարրերը ուսած ըլլալու է իր հօրմէն՝ Տէր Յովհաննէսէն, որ, ինչպէս տեսանք, ծաղկող վարդապետ մ'էր: Սիրած է նկարչութիւնը Յովնաթան եւ իւրովի ջանացած է ապա զարգանալ անոր մէջ եւ վարպետ հանդիսանալ: Այս մասին ունինք գեղեցիկ վկայ մը՝ իր որդին Յակոբ, որ այսպէս կ'ողբայ հօրը վրայ (էջ 113).

Գործովքն Նաղաշ եւ գիտուն բանի,
Այր քաղցրատեսիլ եւ յոյժ պիտանի.
Քո մահ լըսողըն լայ հոգոց հանի.
Կ'ասեն վա՜խ աւա՜ղ, վարպետ Յովնաթան:
Ո՞ւր է շնորհալից վարպետն իմաստուն,
Որ միշտ զարդարէր քաղցրամ օրհնոց տուն.
Մէջ Հայաստանեաց ծաղիկ, ոսկի սիւն,
Ալ ոչ երեւիս, Նաղաշ Յովնաթան:
Շնորհալից յետոյն նշխարող օրհնոց,
Խաղխայթեալ եղեւ աւերակ եւ խոց:

Այս տողերու մէջ պայծառ ներկայացուած է Յովնաթանի "Նաղաշ" յարանուան ճշմարիտ իմաստը, զոր ինքն ալ շատ սիրած է կրել անուան կից: Յովնաթան իբրեւ նկարիչ ոչ միայն պարապած է ծաղկագրութեամբ, այլ եւ սրբոց նկարներ, այս է դիմանկարներ նկարած, որոնցմով եկեղեցիներ զարդարած է: Թէ ստուգիւ նաեւ դիմանկարներ գիտցած է նկարել, այս

զգալի է նաեւ իւր ինքնագիր տաղերէն. տեղ մը գրած է (էջ 47).

Ասել ես թէ նա որ նաղաշ է,
Գիտէ որ ունքերն ղարաղաշ է.
Ախ, թաղաբնի նըման թաշէ։
Քաշէլ եմ, զալում զալում,
Մաշվել եմ, զալում զալում։

Յօվնաթան ունեցած է նաեւ առանձին աշխատանոց նկարչութեան համար. իւր վերոյիշեալ տաղին մէջ կը գրէ (ի Տփղիս) նաեւ հետեւեալ կարեւոր տողերը.

Ասել ես. Տետրեր գըրէ տաղով.
Ծաղկէ լաջվարդ ալի վարաղով.
Գըրէլ եմ, կարել բաւլայ բաղով...
Խաբար ես ղըրկել քո բերանէն.
Ասէք շատ մի հեռանալ տանէն.
Մէկ օր գալոյ եմ քո թէրխանէն։

Իւր վաթսունումէկամեայ կեանքին մէջ առանց տարակուսի արտադրած ըլլալու էր բազմաթիւ աշխատութիւններ։ Բայց ո՞ւր են այսօր իւր ձեռաց այդ հրաշակերտները։ Անշուշտ փնտռելու է Երնջակայ (Շոռոթ եւ շրջակայքը), Երեւան, Տփղիս եւն քաղաքներու եկեղեցեաց եւ ապարանքներու մէջ։ Արդեօք Էջմիածնի մէջ ալ չէ՞։ Այս մասին ապա։

Առ այժմ չունենալով աչաց առջեւ իր ձեռքէն յայտնի նկար մը, ստիպուած ենք լռել արուեստին կատարելութեան վրայ։

Քանի որ մեր խօսքը Յովնաթանի վրայ է, չենք կրնար անյիշատակ թողուլ իր երկու որդւոց անունները։

* * *

12. Իրենց հօրը հետ գործեցին եւ անոր արուեստը շարունակեցին Յակոբ եւ Յարութիւն երկու եղբայրները։

Յարութիւնի կենսագրութենէն ոչինչ ծանօթ է ինծի. բայց Յակոբի մասին գիտեմ ինչ ինչ։

Նախնական կրթութիւնը ստացած է Յակոբ Ղուոթու դպրոցը, ուր դասախօսած է ժամանակ մը Յովնաթան։ Իւր տաղերէն միոյն մէջ, ուր "Ղուոթու վերի դասի տիրացու տխմար տղայոց վարքը" նկարագրած է, Յակոբի մասին կը գրէ (Թ. 537, Թղ. 50ա).

> Մեր Յակոբ չկարաց տեղի դադարի,
> Չի թողել մեայ քար վերայ քարի։

Այնուհետեւ ալ եղած է միշտ հօրը հետ, զոր կարելի է հետեւցընել Յակոբի հետեւեալ տաղերէն (Թ. 537. Թղ. 111բ).

> Ասիր. թող տուն գնայ քո հայր Յովնաթան.
> Դու ինձ մօտ կաց, մեր տուն չինեմ քեզ վաթան։

Երկու բան սորված է Յակոբ իւր հօրմէն քանաստեղծութիւն եւ նկարչութիւն։

13. Իբրեւ քանաստեղծ չէր կրնար համեմատուիլ բնաւ հօրը հետ. ունինք իրմէ 19

տաղ, ամէնն ալ "սիրոյ երգեր" (բաց ի ողբերգութենէն), ուր սակայն չկայ ոչ Յովնաթանի տաղերուն խանդավառութիւնը եւ ոչ անոր ճարտար եւ նկարուն գրիչը։ Ինչպէս տաղերուն ինչ ինչ տեղեր ցոյց կու տան, Յակոբ ծանօթ եղած է թաթարերէնի եւ վրացերէնի. Թաթարերէնը եղած է նոյն իսկ իր երգերուն լեզուն։ Ամէնէն յաջող երգերէն պէտք է համարել "ի մահն Յովնաթանի" ողբերգութիւնը։ Երգերն յօրինած է Յակոբ մասամբ հօրը կենդանութեան ժամանակ։

Ինձի ծանօթ իւր 19 տաղերու սկզբնաւորութիւնքը կու տամ հոս այբուբենական դասաւորութեամբ, ուսկից դիւրին է ընդհանուր պատկեր մը կազմել։ Գ. Զօպանեանի հետ արժանի չենք դատեր զանոնք տպագրութեան, թէեւ ոմանք կրեն վրանին հրապուրիչ գոյն մը։

1. *Ահա եղեւ գարուն նոր արեւ պայծառ*
   *Դարտերս եղեւ թազայ սիրտս կրակով վառ.*

"Տաղ սիրոյ„. ծանօթ է՝ Թ. 537, 110բ։ —

2. *Ամէն առաւօտ դուրս կու գաս դու շողշողալով*
   *Վիզդ լցած ոսկէ ու արծաթէ լէքալով.*

"Տաղ սիրոյ„. ծանօթ է՝ Թ. 537, 108ա։ —

3. *Այսօր գարուն է նոր տարի*
   *զրել եմ հազար բարի.*

"Տաղ սիրոյ„. ծանօթ է՝ Թ. 537, 114ա։ —

4. *Այսօր նոր գարուն է շնորհազարդ զատիկ*
   *Հագել ես սարասար կապել ես զառ գոտիկ.*

"Տաղ սիրոյ„. ծանօթ է՝ Թ. 537, 111բ։ —

5. *Առաւօտուց ելնեմ լալով քեզ մօտ գամ.*

**“Տաղ սիրոյ”. Ծանօթ է՝ թ. 537, 102բ։ —**

6. *Գարուն եղեւ իմ սիրտս չեղեւ ուրախ.*

**“Տաղ սիրոյ”. Ծանօթ է՝ թ. 537, 106ա։ —**

7. *Գովելի նախշուն բլբուլի նման*
*Երեսդ վառել այ ինչպէս եասաման.*

**“Տաղ սիրոյ”. Ծանօթ է՝ թ. 537, 115բ։ —**

8. *Եկ գնամք ձեր պաղչէն շուր գամք միատեղ,*
*Քաղենք կարմիր վարդ. եասամանն զամբեղ.*

**“Տաղ սիրոյ”. Ծանօթ է՝ թ. 537, 105ա. թ. 647, 87բ։ —**

9. *Եկ գնամք ձեր բաղչէն, վարդն է բացուած.*

**“Տաղ սիրոյ”. Ծանօթ է՝ թ. 537, 103ա։ —**

10. *Ես քո սիրոյն եղէ ջնուն,*
*Գիշեր ցորեկ էլ չունիմ քուն.*

**“Տաղ սիրոյ”. Ծանօթ է՝ թ. 537, 115ա։ —**

11. *Յանկարծ տեսայ սիրելիս բաղչէն գալիս.*
*Ձեռացն կարմիր վարդ մէկ ինձ ոչ տալիս.*

**“Տաղ սիրոյ”. Ծանօթ է՝ թ. 537, 109բ։ —**

12. *Յաւուր միում զքեզ տեսայ սալվի ու չինար.*

**“Տաղ սիրոյ”. Ծանօթ է՝ թ. 537, 107բ։ —**

13. *Յաւուր միում նոր ամսեանն յունուարի*
*Քեզ գրով շատ բարեւ արի.*

**“Տաղ սիրոյ”. Ծանօթ է՝ թ. 537, 113բ։ —**

14. *Յորժամ եղեւ քաղցր գարուն շնորհազարդ.*

**“Տաղ սիրոյ”. Ծանօթ է՝ թ. 537; 101բ։ —**

15. *Յորժամ որ լինի զատիկ շնորհազարդ*
*Քո սիրոյդ կեղնիմ չնուն դիւանայ.*

"**Տաղ սիրոյ**". **ծանօթ է՝ թ.** 537, 105 **բ. թ.** 647 88 **ա**։ —

16. *Նազլի ծաղիկ ես սմբուլ,*
*անուշահոտ կարմիր վարդ.*

"**Տաղ սիրոյ**". **ծանօթ է՝ թ.** 537, 109 **ա**։ —

17. *Նոր զարուն է ձեր բաղչումն,*
*բացված է լալա.*

"**Տաղ սիրոյ**". **ծանօթ է՝ թ.** 537, 113 **բ**։ —

18. *Ողբամ արտասուօք կոծով տխրութեան*
*Հառաչմամբ ծայնիւ սրտիւ դառնութեան*

"**Ողբերգութիւն յաղագս մահուան Նաղաշ Յովնաթանի հօր իւրոյ**". **ծանօթ է՝ թ.** 537, 96 **ա.** 647, 83 **ա**։ — **Հրտ. Ա. Չօպանեան՝ Նաղաշ Յովնաթան աշուղը, էջ** 113 – 115։ —

19. *Սովտիկիմ ռահմ էյլայ,*
*Բիր զուլ վէր բանայ,*
*Քեզ տեսնողն էլ ինչպէս դարտի դիմանայ.*

"**Տաղ սիրոյ**". **ծանօթ է՝ թ.** 537, 104 **ա**։ —

14. **Բայց Յակոբ աւելի ուշադրութեան արժանի է իբրեւ** *Նկարիչ-Նաղաշ*։

**Հօրը աշխատանոցին մէջ մնալով երկար ժամանակ, նա իւրացուցած է Յովնաթանի արուեստը եւ անոր մահուընէ ետքը՝ իրեն սեպհականած՝** *Նաղաշ* **յորջորջանքը։ Իւր սիրելեացն ուղղած տաղերուն մէջ յաճախ տողած է այսպիսի մտքեր.**

"**Մէկ օր ինձ մօտ արի,** *պատկերիդ նման քաշեմ*" (**թ.** 537, **թղ.** 113**ա**). "**Նման ես**

ծաղկին սմբուլ ռէհանին, խելքն տարար Յակոբ պատկերհանին„ (անդ, թղ. 105բ). "Նախաշ Յակոբին զարդերն իմացիր„ (անդ. 106ա)։

15. Նման Յակոբի նաեւ "փոքրիկ„ Յարութիւնը հետեւած է նկարչութեան, անշուշտ ի սկզբան իբրեւ Յովնաթանի աշխատակից եւ ապա՝ Յակոբի։ Այս մասին ես տեղեկութիւն ունիմ միայն Երնջակայ Ս. Կարապետի վանքի եկեղեցւոյն մէկ արձանագրութենէն, զոր յառաջ բերած է Մ. արքեպ. Սմբատեանց վերոյիշեալ աշխատութեան մէջ։

Համաձայն Սմբատեանցի Յակոբ եւ Յարութիւն Յովնաթաններ այլ եւ այլ պատկերներով եւ ծաղկեզարդերով զարդարած են Ս. Կարապետի վանքի եկեղեցին. սակայն դժբախտաբար այս զարդերն ու նկարք այսօր մեծաւ մասամբ եղծուած ու ապականած են անձրեւներէն ու խոնաւութենէն, որոնց ենթարկուած են եկեղեցւոյն անխնամ մնալուն հետեւութեամբ։ Շատ փափաքելի էր որ օր յառաջ գտնուէր բարերար մը, որ ազատէր գոնէ լուսանկարի միջոցաւ՝ ճարտար նկարչացս ձեռակերտներու մնացորդները՝ յաւիտենական կորուստնէ. որով կը տրուէր մեզի հնարաւորութիւն Յովնաթանեանց արուեստի ինքնուրոյն գծերն յերեւան հանելու։

Այս տեղ խօսեցնել կու տամ ականատես Սմբատեանցը (էջ 15).

"Տաճարի սեղանը ծաղկեցրած է 1740 (իմա 1730) թուին Շոռօթեցի Նաղաշ Յովնա-

թանը (!), որոյ յիշատակագիրը գրուած է ձախակողմեան խորանի վրայի պահարանին մէջ։„ Ակնարկուած յիշատակարանը տուած է Սմբատեանց էջ 6, ուսկից կը տեսնուի թէ ծաղկողն ո՛չ թէ Յովնաթանն եղած է, այլ անոր որդիքը․ թերեւս երբեմն նաեւ Յովնաթան աշխատած ըլլայ հոն. Յիշատակարանին խօսքերն են.

"ՌՃՀԹ (1730) ԹՎԻՆ ՍՈՒՐԲ ՍԵՂԱՆՆ ԾԱՂԿԵՑԱՒ ՁԵՌԱՄԲ ՅՈՎՆԱԹԱՆԻ ՈՐԴԻՈՑՆ ՅԱԿՈԲԻՆ ԵՒ ՅԱՐՈՒԹԻՒՆԻՆ․ ՈՒՐԵՄՆ ՅԻՇԵՍՋԻՔ Ի ԲԱՐԻՆ ԵՒ ԴՈՒՔ ՅԻՇԵԱԼ ԼԻՋԻՔ Ի ՔՐԻՍՏՈՍԷ„։

"Նաղաշ Յովնաթանի եւ նրա որդւոց նկարած ծաղկենկարները, կը շարունակէ Սմբատեանց, էջ 15, այսօր իսկ տեղ տեղ երեւում են սեղանոյ կամարների վրայ, նոյնպէս եւ Պօղոս-Պետրոս առաքելոց պատկերներն։„

Սմբատեանց անխորհուրդ խորհուրդը կուտայ՝ "կարեւոր է ամբողջացնել ծաղիկները, կամ բոլորը սպիտակացնել„ (անդ, 15)։

Թէ ի՞նչ վիճակի մէջ կը գտնուի այժմ եկեղեցին, չեմ գիտեր։

Չեմ կրնար ըսել ստուգութեամբ թէ Յովնաթանեան նկարիչք նկարած են ուրիշ եկեղեցիներ[1] ալ։ Բայց յամենայն դէպս շատ թան-

---

[1] Հ. Ալիշանի համաձայն (Սիսական, 355) 1708ին նորոգուած է Շոռոթու Ս. Լուսաւորչի եկեղեցին, ուր կը տեսնուին դեռ "հետք գունագոյն նկարուց„ Վայրկեան մ'իսկ չեմ տարակուսիր թէ անոնք արդիւնքն են Յովնաթանի եւ իւր որդւոց ճարտար վրձիններուն։ Շոռոթ գիւղա-

*կագին են մեզի համար Ամբատեանցի ցայս վայր հաղորդած տեղեկութիւնք, որոնք կրնան կ'ընծայեն ի վեր հանելու ԺԸ դարու առաջին քառորդին հայ գեղարուեստի պատմութեան կարեւոր մէկ էջն եւ մանաւանդ լուսաւորելու Էջմիածնի տաճարին նկարներու եւ զարդերու ծագումը։ Բայց անհրաժեշտ է առ այս ունենալ Ս. Կարապետի վանաց եկեղեցւոյն նկարներէն նմանահանութիւն՝ համեմատական քննութեան համար։ Վասն զի, ինչպէս քիչ մը ետքը պիտի տեսնենք, Էջմիածնի Տաճարին մէջ ալ կը գտնուին կտորներ Յովնաթաններու ձեռքէն, զորոնք ճշդիւ մատնանշելը շատ դժուարին է։*

16. *Յակոբ եւ Յարութիւն Յովնաթաններէն դեռ չհեռացած կանխենք ընել հարցում մը. մինչեւ ե՞րբ երկարած է անոնց կեանքը։*

*Յակոբ Յովնաթանի երէց որդին էր, հետեւաբար Ներսէսէ պիտի ըլլայ մեզի մինչեւ* 1722 *ենթադրել առ նուազն* 30 *տարուան, որով, շնորհելով իսկ* 80*ամեայ կեանք մը, երկարած կ'ըլլայ մինչեւ* 1770։ *Յարութիւնը Յակոբէն կը կոչուէր "փոքրիկ,,, ուստի* 1722*ին առ առաւելն* 15—20 *տարեկան ըլլալու էր. եթէ ընդունինք թէ վայելած է* 80*ամեայ կեանք մը, վախճանած կ'ըլլայ* 1780—90*ի մէջերը։*

---

*քաղաքն ունէր դեռ Ս. Յակոբ, Ս. Նշան, Ս. Աստուածածին, եւն եկեղեցիներ, առաջինը կառուցուած Անտոփին մէջ որուն համար Վարդան՝ Յովնաթանի պապը մեծ գործունէութիւն ցոյց տուած էր. եւ այս նկարազարդուած ըլլալու էր։*

17. կարեւոր է հարցմանս պատասխանը, լուծելու համար այն դժուարութիւնը, զոր կ՚ընծայէ Ղուկաս կաթողիկոսի (1780—1799) վարուց կենսագիրը, որմէ ազդուած են ապահովաբար նաեւ Շահխաթունեան եւ Ալիշան։

կենսագիրն[1] խօսելով Էջմիածնի Տաճարին մէջ Ղուկաս կաթողիկոսի ըրած նորոգութիւններու վրայ, կը գրէ ի մէջ այլոց.

"Արդ մինչ նորոգեցան խախտեցեալ սիւնք եւ կամարք եւ այլ հնութիւնքն սրբոյ աստուածեան տաճարին եւ քուածեփ եղեալ ձիւնափայլ եւ արծաթանիշ սպիտակացան ի ներքուստ անտի բոլորապէս, ապա այնուհետեւ զծաղկաբարութեան եւ զպատկերագործութեան պատրաստութիւնս տեսանելով՝ ի հեռաւոր տեղեաց եւ ի հոյակապ մեծանուն քաղաքաց զգոյնագոյն, զերանգ երանգ եւ զսղագին դեղորայս եւ զոսկեայ վարաղս մաքուրս ի յեալտուզոյ ձեռամբ հարազատ նուիրակաց արհիագունից նախապատրաստել հոգալ եւ բերել ետ։ Եւ ապա ամենայն գովութեանց արժանի եւ յոյժ անուանի Ծոռօթեցի զեղեցկանկար եւ քաջավարժ

---

1 կենսագիր կ՚անուանենք Ղուկաս կաթողիկոսի նորոգութիւնները պատմող գրուածքին հեղինակը, զոր հրատարակած է Գ. Վ. Յովսէփեան ԱՐԱՐԱՏի մէջ իբրեւ յաւելուած (1901, էջ 183–190, 326–330) այսպիսի խորագրով. "Պատմութիւն ինչ գլխաւոր բանից հարկաւորաց ի ժամանակս տեառն Ղուկասու սրբազան կաթողիկոսի եղելոց"։ Այս գրուածքին մեզի կարեւոր մասն է էջ 327–330, զոր ամբողջապէս յառաջ բերած է նաեւ Ա. Չօպանեան (էջ 19—25)։

Յովնաթանեան Յովնաթան շնորհալի պատկերահան եւ ծաղկարար վարպետն, որ ի Թիֆլիզ բնակէր, ի մեծազօր արքայէն Վրաց (Հերակլ, 1744—1798) խնդրեալ՝ բերել ետ ի սուրբ Աթոռս աշակերտօքն հանդերձ, զորս հայրական սիրով եւ պատուով մեծաւ ընկալեալ, եւ զռոճիկս առատս լիաձեռնութեամբ շնորհեալ...:„

Կենսագրին խօսքերս ի հարկէ Նաղաշ Յովնաթանի մասին չեն կրնար առնուիլ, այլ անոր որդիներէն կամ թոռներէն միոյն վրայ. գիտենք որ Յովնաթան չունէր համանուն որդի. իսկ այս տեղ Յովնաթանեան յարանունը կ'ակնարկէ՝ — ըստ արեւելեան ընդունուած սովորութեան — հօր անունը, եթէ սակայն Յովնաթանու թոռունք իրենց պապին անունն եւ համբաւը չեն ուզած շահագործել կերպով մը, ինչպէս անտարակոյս եղած կ'երեւայ: Յամենայն դէպս պէտք է ըսել որ այս տեղ միայն Յովնաթանու թոռն կրնայ իմացուիլ, որդին Յակոբ Նաղաշի կամ Յարութիւնի:

Յովնաթան Յովնաթանեանի նկատմամբ կենսագրին տուած տողերը կը վաւերացընէ եւ աւելի կը ճշդէ ինքնին Ղուկաս Կաթողիկոս իւր նորագիւտ մէկ թղթին մէջ առ Յովնաթան, գրուած 1784 Սեպտեմբերին(°)[1], զոր վերջերս

[1] Ինձի քիչ մը խնդրական կը թուի ամսոյս անունը: Նամակի խօսքերուն համաձայն՝ գարնանային ամսոյ մը մէջ կը հրաւիրուի, Բուն բարեկենդանէն յառաջ: Հետեւաբար գրուած ըլլալու էր փետրուարին առ առաւելն: — Դժբախտաբար Ղուկաս Կաթողիկոսի թղթերուն 1784ի շրջանը կը

հրատարակեց ՀՈՐԻԶՈՆ օրաթերթին մէջ (1911, թ. 90) Յովհ. Թումանեան։ Այս թղթէն կ'երեւայ որ տաճարին նկարազարդութիւնը հանած է ի գլուխ Յովնաթան տարիներու ընթացքի մէջ, ժամանակ մ'ալ ընդհատելով։ Յառաջ կը բերեմ թղթին կարեւոր տողերը.

"Առ Յովնաթան շնորհալի պատկերահանն որ ի Թիֆլիզ։

Յորմէ հայրական ստոյգ սիրով եւ հոգեւոր ողջունիւ աստուածային առատագեղ օրհնութեամբ եւ սրբոյ Էջման տեղոյս Քրիստոսի զօրացուցիչ եւ պահպանողական շնորհիւն, ծանիր սիրելի եւ հոգեւոր որդի մեր, հարազատ, հաւատարիմ, բազմաշխատ եւ քրտնաջան զաւակ սրբոյ Աթոռոյս, գեղեցկարհեստ, լիաշնորհ եւ հանճարեղ պարոն Յովնաթան։ Զի ահա խստութիւն ձմեռանն եւ ցրտոյն էանց, մերձեցաւ քաղցր գարունն, եւ եկն ժամանակ գործոյդ, եւ լցաւ պայմանդ։ Վասն որոյ ի ժամանել հայրական օրհնութեան եւ սիրածիր թղթոյս առ սիրելի որդեակդ մեր, պարտիս զամենայն արգելառիթ պատճառս ի բաց դնել եւ զկնի Բուն բարեկենդանի ի յառաջին շաբաթուն մեծի պահոցն ի յերկուշաբթի կամ յերեքշաբթի աւուրն, հանել այտի հանդերձ աշակերտօքդ, եւ դիմել առ սուրբ Աթոռ Մայրս քո առ ի աւարտել զկիսատն գործառնութեանդ, ըստ խոկմանդ եւ ըստ պայմանիդ։ Որում ահա ակնադէտ սպասեալ մնամք առ ի ժամու միով յառաջ գալ եւ սկսանիլ զգործդ։ Նաեւ զգոյշ լինիցիս ի յառակէն յայնմանէ, զոր օրհնաբանեալ բերանն Աստուծոյ ասաց. Այր մի սկսաւ եւ այլն։ Ուրեմն կրկին եւ վերստին մեծաւ հարկիւ եւ հայրական սիրով պա-

---

պակսի (հմմտ. Աղանեանց, Դիւան Հայոց Պատմ. Ը.)։ Այս թուղթը տրուած է Գ. Թումանեան Գ. քհ. Աղանեանցէ։

տուիրեմ յանկեղ որդեկիդ իմոյ, պարտիս զգու-
շանալ ի ծաղր լինելոյ ի տեսողաց եւ շուտով գալ
առ ի աւարտել զսկսեալդ: Եւ ի յերկրորդ շաբա-
թուն մեծի պահոցն առ մեզ հասանել: Եւ այս-
պէս գիտացեալ լեր ողջ եւ օրհնեալ եւ զօրացեալ
ի Տէր հանդերձ բարեբողբոջ որդովք եւ քոյա-
նովքդ ամենիւք: Ամէն:

Յոյժ սիրով ողջոյն եւ աստուածային օր-
հնութիւն տամ սիրելի եւ հոգեւոր որդւոյն մերոյ
եւ բազմաշխատ զաւակին սրբոյ Աթոռոյս Բաննահ
վարպետ Աբրահամին, որում եւ հարկադրեմ իսկ,
պարտի ընդ քեզ ելանել եւ գալ ի սուրբ Աթոռս
ի պիտանաւորութիւն գործոյն եւ ի շինումն կի-
սատ մնացելոյն: Ուրեմն պարտիք ի միասին ելանել
եւ գալ շուտով որպէս եւ գրեցաք: Որ եւ լեցի
ողջ եւ զօրացեալ ի Տէր հանդերձ քեւ:„

Թղթէս կ’իմացուի եւ այն թէ Յովնաթան
ունէր ի Տփղիս ընտանիք, նաեւ “բարեբողբոջ
որդիներ„, որոնք Յովնաթանեան շառաւիղը կեն-
դանի պահած են յաջորդ դարերուն ալ: Ար-
դեամբք ալ, Սմբատեանցի վկայութեան համա-
ձայն Յովնաթանեանց տոհմը մինչեւ օրս շա-
րունակուած է. “Նաղաշ Յովնաթանի թոռունք
այսօր իսկ կան Տփխիսում, կը գրէ Սմբատեանց
(անդ, էջ 153), որոնց մին աստիճանաւոր տէ-
րութեան՝ Առաքելն Յովնաթանեանց (1862
թւէն) մեր սանն է:„ Ասոնց քով կը գտնուի,
կ’ըսէ, նաեւ Նաղաշ Յովնաթանի “Ձեռագիր
երգարանը„ ի Տփղիս (անդ, էջ 6): Մանրա-
մասնութիւն այս մասին, կարելի է ուրեմն սպասել
ներկայ սերունդներէն, որոնց քով ըլլալու են
վաւերագիրներ ալ: Հետաքրքրական է մանա-

ւանդ իմանալ թէ արդեօք նաեւ չորրորդ սերունդը եւ յաջորդք շարունակեցի՞ն իրենց հարց արուեստը, եւ այն մինչեւ ե՞րբ։

Ընդունելով այսպէս կրկին Յովնաթաններ մէկ դարու մէջ, առաջին եւ վերջին քառորդ-ներուն ապրած, պէտք չէ խառնել անոնց գոր-ծերին իրարու հետ, որչափ ալ դիւրաւ ենթակայ ըլլան շփոթման։ Երկուքն ալ եղած են նկարիչներ. երկուքն ալ արտադրած են հա-րուստ թուով նկարներ՝ մի եւ նոյն շրջանին, բայց անշուշտ սեփական նկարագիրներով եւ արուեստներով, առաւելութիւնը մնալով միշտ առաջնոյն — Նաղաշ Յովնաթանին, որ բանա-ստեղծ ալ հանդիսացած է մի եւ նոյն ժամանակ։

Պէտք է հետեւաբար երկու Յովնաթան-ներուս ալ վրձիններու հետքերը փնտռել Էջ-միածնի տաճարին նկարներու վրայ։ Եւ ըստ իս ոչ միայն երկու Յովնաթաններուս, այլ չորս Յովնաթանեան նկարիչներու ալ, Յովնաթանի, Յակոբի, Յարութիւնի եւ Յովնաթանի. եւ ասոնցմէ զատ նաեւ Բաննահ Աբրահամ Վար-պետին, որ, ինչպէս կ'երեւայ յատուկ մաս մ'ունեցած է։

18. Ամբողջ խնդրոյն լուծման համար հարկ է քննել մանրամասնութեամբ Էջմիածնի Տա-ճարին նորոգութեանց երկու դարու պատմու-թիւնը սկսեալ ԺԷ դարէն։

Այս նկատմամբ ժամանակագրական պատ-մութիւն պէտք է սպասել Էջմիածնի Դիւա-նէն եւ Մատենադարանէն։ Ինձի մատչելի

*աղբիւրներու վրայ հիմնուած կրնամ միայն հետեւեալ համառօտ գծերը տալ հոս։*

*Տաճարին առաջին նորոգողն եղած է Մովսէս Գ. Կաթողիկոս* (1629—1632), *որ աւելի շինութեան խախտուածներու շուրջն ամփոփուեցաւ։ Իր յաջորդն Փիլիպպոս* (1633—1655) *նոյնպէս ուշադրութիւն դարձուց անհրաժեշտ շինութեանց, աւելին ըրաւ Յակոբ Գ.* (1655—1680), *որ կանգնեց Զանգակատունը, նորոգեց պարիսպը եւն։ Զաքարիա Սարկաւագի համաձայն* (գ. 106—107) *աւելի մեծագործ հանդիսացան Եղիազար* (1682—1691) *եւ Նահապետ* (1691—1705) *կաթողիկոսները. առաջինը “կանգնեաց, կը գրէ, կճեայ կաթուղիկէ ի վերայ Իջման տեղին. եւ հաստատեաց սեղան՝ առնել պատարագ. եւ յերկու կողմն եկեղեցւոյն բարձրացոյց յերկրէ, եւ արար ամպիոն, եւ կանգնեաց սեղան պատարագի։ Եւ շինեաց որմն ի մէջ եկեղեցւոյն ի հարաւոյ դրանէն մինչեւ ի դուռն հիւսիսոյ. զի անդ կացցեն յաղօթս, եւ մի առաջի աւագ խորանին։ Եւ ի տանիս եկեղեցւոյն յերիս տեղիս կանգնեաց կաթուղիկէ։”*

*Եւ երկրորդին համար կը գրէ* (էջ 136).

*“Կաթուղիկոսն Նահապետ կայր յիւրում գործս ի սուրբ Էջմիածին, եւ յաւելոյր շինութիւնս ի սուրբ աթոռն Էջմիածնի եւ յամենայն վանորայք։”*

*Բայց տաճարը ծաղկենկարելու մասին դեռ ոչ ոք խորհեցաւ. այնպէս որ* 1673, *Մարտին*

երբ գաղղիացի ճանապարհորդն Chardin կ'այցելէր Տաճարս, չտեսաւ հոն որ եւ իցէ նկար կամ ծաղկեզարդ. „Le dedans de l'édifice (տաճարը) n'a aucun ornement de sculpture ni de peinture“ (տե՛ս Voyages en Perse et autres lieux de l'Orient. Amsterdam 1711, t. I, p. 154), թէեւ Շահխաթունեանցի համաձայն Ստեփանոս Վրդ. Լեհացին († 1689) ունեցած է հոն նկարներ. այս մասին ապա։ Նոյն իսկ 1700ին P. de Tournefort չէ գտած հոն այս կողմանէ ուշադրութեան արժանի բան մը, թէեւ մանաւորապէս խօսք ըրած է Էջմիածնի հնութեանց վրայ (հմմտ. իւր Relation d'un voyage du Levant, Ámsterdam, 1718, t. II. p. 139 եւն)։

Այս տեսակէտով առանձին խնամք տարած են Տաճարին վրայ յաջորդ կաթողիկոսներն Աղէքսանդր Ջուղայեցի (1706—1714) եւ մանաւանդ Աստուածատուր Համատանցի (1715—1725)։

19. Վերջնոյս նկատմամբ ընդարձակ ակնարկութիւն ունի նաեւ Ղուկաս կաթողիկոսի կենսագիրը այսպէս.

"Թէպէտ յաւուրս Տեառն Աստուածատրոյ հոգելոյս Հայրապետին եւ ի ժամանակս նախավրդովման կալուածոցն ղզլպաշից թագաւորաց, ի մէջ աստուածեան տաճարիս շինեցան բոլոր մարմարոնեայ հրաշակերտ շինուածքն եւ ծաղկեցան, եւ չորեքեան խախտեալ սիւնքն նորոգեցան... եւ մէջն սրբոյ տաճարիս բուամբ

նորոգեցան եւ պատկերազրեցան ի տեղիս տեղիս, եւ անհեթեթ ծաղկեցան հոգաբարձութեամբ նոյն հոգելոյս Տեառն Աստուածատրոյ հայրապետին ի ՌՃԿԹ[1] թուին, որպէս գրի ի պատմութիւնս նորին երանելոյ, ի գաւազանագրքի ատ[2], սակայն 60 եւ այլ աւելի ամք անցանելով, յայսքան միջոցում սրբոյ տաճարի տանեաց բոլոր սալքն եւ քարինքն մաշեցեալք եւ քայքայեալք էին եւ տեղի տուեալ մոից անձրեւաց եւ ի հոսել յորդաբուղխ անձրեւաց եւ հեղեղաց իսկոյն ի ներքս մտանելով, զբռածեփս եւ զծաղկունսն գիջացուցանելով եւ եղծանելով ի վայր թափէին»„ (Զօպանեան՝ 20։)

Այս տողերու ստուգութեան կը վկայէ ինքն Աստուածատուր իւր հետեւեալ արձանագրութեան մէջ, զոր յառաջ կը բերէ Շահխաթունեան (Ա. 32).

“Ի թուականութեան հայկական ՌՃԿԹ (1720) ես տէր Աստուածատուր համատանցի

---

[1] Թէ ԱՐԱՐԱՏի մէջ եւ թէ Զօպանեանի քով տպագրուած է “ՌՃԴ„ = 1655, երբ սակայն չկար Աստուածատուր անուն կաթողիկոս. կ՚առաջարկեմ կարդալ “ՌՃԿԹ„ = 1720 կամ մօտաւոր թիւ մը, որ զետեղուի 1715—1726ի մէջերը. այսպէս ունի Աստուածատուրի Արձանագրութիւնը, եւ նման թիւ մը կ՚ենթադրէ նաեւ կենսագիրն, որ նորոգութիւնն տեղի ունեցած կը համարի 1786էն իբր 60 տարի յառաջ, ուրեմն մօտաւորապէս 1726էն յառաջ։

[2] Ակնարկուած գրութիւնն արդեօք Յակոբ Շամախեցւոյ գրուածքն է. հմմտ. Ս. Կանայեանց, Ցուցակ Ձեռագրաց Ներսիսեան Հոգ. Դպրանոցի, Տփղիս, 1893, էջ 50—51. Նայելու է այս տեղ մանրամասնութեանց համար։

կաթուղիկոս ամենից Հայոց եւտու նորոգել զչո-
րեսին խախտեալ սիւնքն սրբոյ եկեղեցւոյս, եւ
զբոլոր եկեղեցին նորոգեալ եւ ծաղկեալ
հանդերձ մարմարիոնեայ շինուածովք որ ի
մէջ սրբոյ եկեղեցւոյս են՝ յիշատակ հոգւոյ
իմոյ, ի վայելումն տառապեալ ազգի Հայոց
եւ աստ ի սուրբ Աթոռս զետեղեալ միաբանից.
եւ որք ընթեռնուք զարձանս զայս, յիշեցէք զիս
ի մաքրափայլ յաղօթս ձեր. եւ դուք յիշեալ
լիջիք առաջի Քրիստոսի. ամէն„։

Գծբախտաբար կենսագիրը կը լռէ աւելի
մանրամասնութիւն Աստուածատուրի գործու-
նէութեան եւ շինութեանց մասին. նոյն իսկ թէ
որչափ էր Աստուածատուրի օրով նկարներու
թիւը. բայց հոգ չէ։ Գիտենք որ 50 տարի յե-
տոյ, Սիմէոն կաթողիկոսի օրով Տաճարին նկար-
ներուն թիւը կը հասնէր 88ի, ինչպէս կը տես-
նուի 1778ին Սիմէոնի հրամանաւ կազմուած
ցուցակէն, զոր վերջին պահուս լոյս հանեց Գա-
րեգին Վ. Յովսէփեան ԱՆԱՀԻՏի մէջ (էջ 68—
70)։ Այս թուին եթէ մէկ մասն համարինք իսկ
վերջին կէս դարու կաթողիկոսներէն, որ դժուա-
րին է, առնուազն 50ը կը մնայ Աստուածատրոյ։
Այս տեղ կանգ կ՚առնունք եւ թոյլ կու տանք
մեզի հարցնելու, թէ ինչ արուեստաւորներ գոր-
ծածեց Աստուածատուր իւր ծրագրին յաջողու-
թեան համար։

20. Այս շրջանին "եկեղեցիներ ծաղկող
եւ պատկերագրող„ համբաւաւոր անձնաւորու-
թիւն մը ճանչցանք յանձին Յովնաթան Նաղաշի։

*Առանց տարակուսի զինքը հրաւիրած ըլլալու է Աստուածատուր։ Առ այս ունիմ ինձի վստահութեան արժանի վկայ մը զԻնճիճեան Հ. Ղ., որ կարծեմ ամէն մթութիւն եւ երկբայութիւն պէտք է փարատել իւր հետեւեալ տողերով։*

*Ստորագրելով Էջմիածնի տաճարը կը շարունակէ[1].*

*"Իսկ ընդ մէջ եկեղեցւոյն է վեցերորդ խորան եւ տեղի անուանեալ Էջմիածին կամ Իջման տեղի. ...սակաւ ինչ բարձրացեալ ի յատակաց եկեղեցւոյն շուրջանակի պղնձի վանդակաւ պատեալ. յորոյ վերայ է փոքրիկ կաթուղիկէ վայելուչ կանգնեալ ի վերայ սպիտակ թափանցիկ մարմարիոնեայ չորից սեանց. բարձրութիւն նոցա աւելի քան զմի գրկաչափ. իսկ ստուարութիւն շրջապատի իբրեւ թզաչափ. նոյնպէս եւ յատակ տեղւոյս Էջմիածնի շինեալ է ի նոյն մարմարիոնեայց եւ ի սեաւ քարանց. զայսոսիկ մարմարիոնեայս ետ բերել ի Թէվրիզոյ Աստուածատուր Կաթուղիկոս, եւ նա ինքն պատեաց զտեղին վանդակաւ. եւ բարձեալ զառաջին քարինս յատակին, եդ արտաքոյ եկեղեցւոյն՝ որք էին քանդուածոյք, այլ ոչ մարմարիոնեայք։...* Պատկերք ամենայն խորանացս են գործ նկարչին՝ որ մականուանեալ կոչի Նաղաշ

---

1 Ինճիճեան Հ. Ղ. — Աշխարհագրութիւն չորից մասանց աշխարհի. Մասն Ա. հատոր Ա. [Նոր Հայաստան] Վենետ. 1806, էջ 262։

Յովնաթան յազգէս Հայոց, ճարտար նկարիչ, եւ յաջող քանաստեղծ ի ռամկաց լեզու ի ժամանակս Դահմաս Գուլի խանին[1]։„

Ինճիճեան Հօր խօսքերը մեկնութեան պէտք չունին կարծեմ։ Նոյնպէս կը գրէ նաեւ Չահխաթունեան վարդապետ։

“Յամենեսին ի սոսա (ի նկարս տաճարին) քաջապէս փայլին շնորհք ձեռաց մեծանուն վարդապետին Ստեփանոսի Լեհացւոյ եւ քաջ նկարչին Հօր Յովնաթանու։„ Այս տեղ “Հօր„ բառն կ'ակնարկէ բացարձակապէս Բանաստեղծ Յովնաթանը։ Անորոշ է սակայն Չահխաթունեանի միտքը հետեւեալ հատուածին մէջ, ուր կը զգացուի թէ ծանօթ եղած են իրեն Ղուկաս Կաթողիկոսի Կենսագրին տողերը.

“Ղուկաս Կաթողիկոս... Նորոգեալ ետ (1786) ըստ բոլորին եւ զմէջ սրբոյ Տաճարիս՝ զորմունս եւ զառաստաղն բազմատեսակ գեղեցիկ նկարուք խորհրդաւոր պատկերօք ի ձեռն հանճարաւոր արհեստագէտ նկարչին Յովնաթանու, որոյ յիշատակարան արձանագրութեանն դնի ի շրջապատ հիման մեծի կաթողիկէին։„ (Ա. էջ 36։)

Կրկին հատուածներէս կամ պիտի հետեւցընենք թէ Չահխաթունեանց ծանօթ չէր

---

1 “Դահմաս Գուլի խանն„ նոյն ինքն Նատր Շահն է, իշխած 1736–1747. “ի ժամանակս„ բացատրութիւնն ի հարկէ յընդհանուրն իմանալու է։

Յովնաթան Բանաստեղծի ժամանակին, եւ կամ կը զանազանէ կրկին Յովնաթաններ, հայր եւ որդի։

Ինչ եւ իցէ։ Մեզի համար բաւական է եւ այն թէ ստուգիւ ունեցած է Բանաստեղծ Յովնաթանը Էջմիածնի տաճարին նկարազարդելու մէջ մասնակցութիւն։ Հետեւաբար պէտք է փնտռել հոն անոր ձեռաց նշմարները։

Աստուածատուր կաթողիկոսին նորոգութիւնները կէս դար ետքը մեծաւ մասամբ կ'եղծանին, ինչպէս տեսանք կենսագրին խօսքերէն. եւ Ղուկաս կաթողիկոս (1780—1799) կը ձեռնարկէ կրկին հիմնական նորոգութեան (1783—6), երբ կը ճոխանայ տաճարին բազմաթիւ պատկերներով. կենսագիրն ասոնց թիւը կը հանէ 120ի։ Այս նորոգութեան ժամանակ ուշադրութիւն կը դարձուի նաեւ հին նկարներուն. եւ կը ջանացուի՝ այնպիսիներն, որոնք բոլորովին չէին եղծուած, նորոգելով պահել իրենց տեղը. այս նկատմամբ կը գրէ կենսագիրը.

"Զորս ըստ մեծի մասին նոր ի նորոյ ըստ ըղձալի եւ սիրավառ տենչանացն եւ ըստ աստուածազգեցիկ եւ նրբանկատ հանճարոյն պատկերագրել եւ յօրինել ետ, եւ զոմանս որք հնացեալք եւ անգեղացեալք էին, նորոգեալ պայծառացոյց„։

Այսպէսով իրաւունք կ'ունենանք այսօր Էջմիածնի տաճարին նկարներու եւ ծաղկեզարդներու մէջ թագնուած ենթադրելու նաեւ Բանաստեղծ Նաղաշ Յովնաթանի նկարները։

21. Բախտ չեմ ունեցած անձամբ տեսնելու Էջմիածնի տաճարին նկարներն ու ծաղկենկարները. բայց առնցմէ հարուստ թիւ մը լուսանկարով հրատարակեցին վերջերս Պ. Ա. Չօպանեան եւ Ս. Վ. Աստուածատրեան[1]։

Այս թուին մէջ գտնուելու են առանց տարակուսի մաս մը նաեւ Յովնաթան նաղաշի ձեռքէն. բայց մատնացոյց ընել զանոնք յանուանէ ես չեմ համարձակիր, քանի որ չունիմ ինձի ամենեւին կռուան, ուր յենուլ կարենամ գոնէ համեմատական ուսումնասիրութեան համար։

Ինչպէս հարեւանցի ակնարկ մը այս նկարներուն վրայ կը համոզէ, Էջմիածնի տաճարի նկարներուն մէջ դեր ունեցած են այլ եւ այլ ազդեցութիւններ՝ գլխաւորաբար պարսկական-արեւելեան եւ իտալական (այլեւայլ շրջան)։ Ասոր վրայ աւելցնելու է եւ այն, որ հին նկարք նորոգուած են նորագոյն ձեռքէ մը — ուրեմն խառնուած են կրկին ազդեցութիւնք ի մի։

Իմ տպաւորութեանս համաձայն ստորեւ կը բաժնեմ ծանօթ նկարներս երեք խմբի.

Պարսկական-արեւելեան, Իտալական եւ խառն։

22. Ղահխաթունեանց այս նկարներու մէջ կը տեսնէր Ստեփ. Լեհացւոյ մատը. սա

---

[1] Պատկերացոյց Հնագիտական մասնաւոր հնութեանց Մայր աթոռոյ Ս. Էջմիածնի եւ շրջակայից. Հրտ. Սահակ Վրդ. Աստուածատուրեան. Պրակ Ա., Վաղարշապատ, 1910։

կրթուած Նախնաբար ի Լեմբերգ, կրնար դիւրաւ ենթարկուած ըլլալ դարուն Նոր Հոսանքին, որ Իտալիայէն կը շնչէր։ Բաց ասկից հարկ է ուշադիր ըլլալ որ Ղուկաս Կաթ. երկար ժամանակ առաջնորդութիւն ըրած է Զմիւռնիայի մէջ, որ իտալական ազդեցութեան շատ ենթարկուած էր, եւ ուր իտալական եւ գաղղիական վաճառականութիւնն էր Նաւահանգստին տէրը։ Կենսագիրն արդէն կը շեշտէր, թէ հմուտ էր արուեստին, եւ շատ կէտերու մէջ անձամբ ծրագիր տուած էր։ Նաեւ Ներկերն եւ այլ պատրաստութիւնք Եւրոպայէն հոգացուած են, ուրեմն կար ծանօթ մը եւրոպական արուեստին։

Ենթադրելով թէ Շահխաթունեանց Ստեփանոս Լեհացւոյ մասին գրած տողերու համար ունեցած է վաւերական աղբիւր, կը կարծեմ թէ Ստեփանոս՝ Եղիազարու օրով կամ անկէ յառաջ՝ ունենալով իրեն ընկերներ, Նկարած ըլլայ իւղանկարներ, որչափ ալ զանոնք յիշատակութեան արժանի դատած չըլլայ Տուրնըֆոր։

Ստեփանոսի վրայ ուրիշ տեղ առանձինն խօսելու միտք ունենալով՝ խնդրոյս լուսաւորութեան համար այս տեղ կը բաւականանամ յառաջ բերել Յիշատակագրի մը տողերը, որոնք կը գրուին Յակոբ Կաթողիկոսի օրով (1668) ճառընտրի մը վերջը.

"Գրեցաւ ձեռամբ Ստեփաննոս քահանայի եւ ծաղկափթիթ տեսակօք զարդարեցաւ Ալեքսիանոսիւ եւ Նահապետիւ ԱՐՈՒԵՍՏԱՒՈ-

ՐՕՔ. *Հոգացողութեամբ եւ սատարութեամբ* ՍՏԵՓԱՆՆՈՍԻ վարդապետի [Լեհացւոյ]„[1]:

Ցիշատակագրիս *արուեստաւորը* բառը սեպհական իմաստ մ'ունենալու է. աւելի քան մ'ըսուիլ կ'ուզուի քան պարզ "ծաղկող„ մը:

Ի բաց կը թողունք հոս այս եւ նման խնդիրներն, որոնց մանրամասն պատասխանը Էջմիածնի մատենադարանէն միայն յուսալի է:

23. Աւելի ամփոփուելով Ա. Չօպանեանի եւ Ս. Վ. Աստուածատրեանի ներկայացուցած նկարներու շուրջը, կը դասաւորեմ զանոնք ըստ վերոյնշանակեալ բաժանման այսպէս.

Ա. *Իտալական արուեստ*.

Իտալական արուեստը յերեւան կ'ելլէ մանաւանդ հետեւեալ նկարներու մէջ. 1. *Ս. Աստուածածին*, նկարուած Իջման Սեղանի գմբեթի մարմարինի վրայ. ուշագրաւ է պատկերին նկարագիրը. Ս. Աստուածածին նստած է, գիրկն Յիսուս մանուկ եւ ձեռքը բռնած գիրք մը, ուր կը նային երկուքն ալ: Ամբողջ նկարը շատ նուրբ ձեռաց արդիւնք է, որ կը յիշեցընէ ամբողջապէս ԺԷ դարու իտալական արուեստը: Ուշադրութեան արժանի է որ նման գիրքի մէջ՝ — Յիսուս մօրը գիրկը՝ կը նային գրքի մէջ — կը ներկայանայ նաեւ իտալական գործ մը ԺԵ—

---

[1] ԱՐՐՑ. 1888. էջ 416:

ԺԶ դարէ, որ պահուած է Բերլինի Թագաւորական Միւսէոնի մէջ (հրտ. Նկարներու, Թ. 82)։ — 2. «*Առաքեալ մը*» անուանուած նկարը. իտալական է կեցուածքը, նայուածքը, հանդերձին ոլորումները եւն, յատկապէս ձեռաց մատուըներու դիրքը։ — 3. *Աւետաբեր Հրեշտակը*. իտալական ազդեցութեան ծնունդ է մանաւանդ հրեշտակին ձեռքը տեսնուած շուշանը, զոր ԺԵ դարէն առաջին անգամ սկսան տալ իտալական արուեստագէտք Գաբրիէլի ձեռքը։ Միքայէլ Անջելոյի նկարները կը յիշեցնէ մանաւորապէս Հօր Աստուծոյ տեսքը իւր լայնածաւալ հանդերձին մէջ, որ արձակ ձեւուըներով քաոսն շարժման մէջ կը դնէ (հմմտ. Սեքստեան ձեղունը). զուտ իտալական են նաեւ հրեշտակին հանդերձի ծալքերն եւն։ — 4. *Աւետընկալ Մարիամ*. իտալական են մանաւանդ հանդերձի հարուստ ծալքերն, նոյնպէս գրակալին վրայ գիրքը։ — 5. *Առաքեալ մը* (Յակոբոս Եղբ. Տեառն)։ — 6. *Պօղոս Առաքեալ*. հիանալի գործ մը իւր ամբողջութեան մէջ, որ կը ցուցնէ վրան արուեստաւորի բովանդակ նրբութիւնը։ — 7. *Միքայէլ Հրեշտակապետ* (եւ ոչ Գաբրիէլ, ինչպէս սխալմամբ նշանակած է Չօպանեան). Միքայէլ այս դիրքի մէջ՝ աջ ձեռքը նիզակ եւ ձախը նժար՝ ներկայացնել սիրուած գաղափարականն էր ԺԵ—ԺԶ դարու իտալական ճաշակին։ — 8. *Առաքեալ մը*։ — 9. *Ս. Աստուածածին* Յիսուս գիրկը։

բ. *Արեւելեան արուեստ.*

**Այս ազդեցութեան ներքեւ նկարուած են** 1. *Տրդատ, Աշխէն եւ Խոսրովիդուխտ.* **արեւելեան տպով են մանաւանդ աչքերն ու յօնքերը, թագն ու հանդերձանքը։** — 2. *Ս. Ստեփանոս,* **եւ** 3. *Փիլիպոս Առաքեալ.* **նկարուած երկուքն ալ մարմարիոնի վրայ Աւագ Սեղանին ճակատը՝ դէմ առ դէմ. արեւելեան են մանաւանդ ծաղկեզարդ հանդերձանքը եւ երկու կողմերու սռճիները։** — 4. **Ասոնց մէջ–տեղ նկարուած է նոյնպէս մարմարիոնի վրայ՝** *Ս. Աստուածածին:* — 5. *Յարութիւն Քրիստոսի* **շատ անյաջող ձեռք կը նշմարուի ընդհանրապէս ամբողջին վրայ, մանաւանդ Յիսուսի սրունքներուն եւ կեցուածքին մէջ. ուրոյն տեղ ունենալու է նկարս քան նախորդք եւ յաջորդք։** — 6. *Հայկ Նահապետ* (?)։ — 7. *Աբգար Թագաւոր* (**իւղանկ.** **թ.** 8)։ — 8. *Ծլն ի վիրապէն* (**թ.** 13)։ — 9. *Մկրտութիւն Տրդատայ* (**թ.** 19)։ — 10. *Ս. Ցակոբ* (**թ.** 27)։ — 11. *Գայանէ* (**թ.** 25)։ — 12. *Ս. Գրիգոր ի Սեպուհ* (**թ.** 30)։ — 13. *Մահ Լուսաւորչի* (**թ.** 31)։ — 14. *Ս. Արիստակէս* (**թ.** 33)։ — 15. *Ս. Սահակ* (**թ.** 34)։ — *Յովհ. Օձնեցի* (**թ.** 38)։ — 16. *Գր. Նարեկացի* (**թ.** 39)։ — 17. *Ս. Ներսէս Շնորհալի* (**թ.** 40)։ — 18. *Մովսէս Խորենացի* (**թ.** 36)։

*Գ. Խառնուրդ Իտալականի եւ Արեւելեանի:*

1. *Թագակիր Ս. Աստուածածին.* ուշադրութեան արժանի է հոս Հայր Աստուած, որ ծերունի մը ներկայացուած է լայնածաւալ հանդերձի մէջ՝ շրջապատուած հրեշտակներէ, որ իտալական է. իտալական է եւ այն, որ Յիսուս մանուկ առած է ձեռքը գունդ մը։ — 2. *Մկրտութիւն Քրիստոսի.* Իտալական կ'երեւայ մանաւանդ Հօր Աստուծոյ դիրքը. ծերունի, եռանկիւնի լուսապսակով եւ ձեռքը գունդ մը խաչով. այս ձեւի օրինակը թէեւ առաջին անգամ հոս կը ներկայանայ, բայց իտալական է ծագումը։ 3. *Ընթրիք:* 4. *Ոտնլուայ* 5. *Ս. Հռիփսիմէ*։

Պ. Զօպանեան տուած է նաեւ երկու բեկոր որմնազարդերէ. զասոնք բնականաբար Արեւելեան խմբի մէջ զետեղելու է. անտարակոյս Ղուկաս Կաթողիկոսի օրով ընդունելու է։

Բաց ի այս նշանակուածներէն Պ. Զօպանեան իւր հաւաքածոյին մէջ տուած է դեռ երկու նկար ալ՝ *Ս. Թադէոս եւ Բարդուղիմէոս առաքեալներու*։ Բայց ասոնք, ինչպէս Աստուածատրեանի հրատարակութենէն կը տեղեկանանք (էջ 10, թ. 6—7) Էջմիածնի տաճարին մէջ չեն նկարուած, այլ Աստուածատուր կաթողիկոսի օրով (1720) Զմիւռնիայէն նուէր ընդունուած խաչկալի երկու դռնակները կը կազմեն (իւղաներկ), որոնք հետեւաբար Յովնա-

թանու անուան հետ բնաւ չեն կրնար կապ ունենալ։

24. Թէ յիշուած երեք խմբերէն որո՛ւն մէջ յատկապէս նկատելու ենք մեծին Յովնաթանու վրձինը, զայն չեմ գիտեր. բայց այնպէս կ'երեւայ թէ աւելի առաջին խմբի մէջ նկատելու ենք Յովնաթանի ձեռքը, չափով մը նաեւ երրորդ խմբին մէջ, վասն զի ասոր ներկայացուցիչք յայտնապէս ենթարկուած են երկրորդ խմբի նկարչի ձեռաց, Ղուկաս կաթողիկոսի օրով՝ խանգարուած, եղծուած մասերը նորոգուելու համար։ Արդեամբք ալ, ինչպէս տողերս գրելէն յետոյ նկատեցի ԱՆԱՀԻՏի մէջ, Սիմէոն կաթողիկոսի հրամանաւ կազմուած (1779) պատկերաց ցուցակի համաձայն այս Ա. եւ Գ. խմբի նկարներու գոյութիւնը կանուխ է քան Ղուկաս կաթողիկոսի նորոգութիւնը։

Այս դատողութեամբ քննելի կը մնայ դեռ, թէ ի՛նչ ճամբով ազդուած է իտալական արուեստէն Նաղաշ Յովնաթան։

Ինչպէս վերագոյն կարճ տողերով ակնարկեցինք, բոլորովին անտեղի չէ կարծելը թէ Իտալիան ծանօթ եղած է Յովնաթանի։ Գոնէ իւր դարուն, ԺԷ դարու վերջերն եւ ԺԸ դարու սկիզբները, այսպիսի ճանապարհորդութիւն մը թէ՛ շատ դիւրին էր եւ թէ՛ շատ հաւանական։ Եւրոպայի հետ առեւտուրն այս միջոցին Շոռոթեցի եւ Ագուլիսեցի վաճառականներու ձեռքն էր, որոնք յաճախ երթեւեկութեան վրայ էին դէպ ի Վենետիկ, Հռոմ, Մարսէյլ եւ

Ամստերդամ. կեդրոններ, ուր մասնաւոր ծաղկման մէջ էր նկարչութեան վերածնութիւնը։ Ինչ դժուարութիւն, ուրեմն, եթէ Յովնաթան ընկերացած ըլլար հայրենակից վաճառական-ներէն միոյն կամ միւսին, եւ քանի մը տարի դեգերած ըլլար Վենետիկ կամ նման քաղաք մը։ Ենթադրութիւնս աւելի հաւանականու-թիւն կը ստանայ, եթէ մտածենք վայրկեան մը, թէ արդէն շատ քիչ է մեր ծանօթութիւնը անոր 61ամեայ կենաց պարագաներու մասին...։

Յամենայն դէպս Յովնաթան Նաղաշ ու-նեցած է մեծ զարգացում իր արուեստին մէջ եւ ցուցուցած է արուեստին ամէն նրբութիւն-ները իր արտադրութեանց վրայ։ Ասով ան-շուշտ հանած է համբաւ ժամանակցաց քով, եւ նոյնի՛ն համար Նաղաշ Յակոբ շռայլած է իրեն այնչափ գովութիւններ։

* * *

25. Այսպէս ԺԸ դարու ընթացքին կազ-մուեցաւ հայ գեղարուեստի պատմութեան մէջ նոր դարագլուխ մը հայկական հողի վրայ, ուր պայծառ հանդիսացան ընտիր անձնաւորութիւն-ներ, Յովնաթան մը, Յակոբ մը, Յարութիւն մը, դարձեալ Յովնաթան մը, վերջապէս Յովնա-թանեան դարաւոր դպրոցը։ Դար մը ամբողջա-պէս գրեթէ պահպանեց իր գոյութիւնը այդ դպրոցը արտադրելով հարիւրաւորներով նկարներ, որոնք զարդարեցին եւ կը զարդա-

րեն դեռ եկեղեցիներ վանքեր եւ ապարանք-ներ, եւ սակայն մինչեւ օրս չեն եղած առարկայ ընդհանուր հիացման։ Պատահաբար միայն գեղարուեստասէր անհատներ, Չօպանեան մը եւ Աստուածատրեան, կու գան ներկայացընել անոնցմէ չնչին թիւ մը՝ յախուռն քովէ քով բերուած։ Սակայն քանի՛ հարիւրներ կը մնան դեռ խաւարի մէջ, կարօտ հզօր ձեռաց, խնա-մոտ, հետաքրքրուող հնասէրներու։ Քանի որ այդ հարստութիւնը այսօր Կովկասահայ եղբարց ձեռքն է, անո՛նց օրըստօրեայ տեսութեան ա-ռարկան, պարտք մը, գրական-գեղարուեստա-գիտական պարտք մը կը մնայ ճնշող իրենց սրտին վրայ, մինչեւ որ լոյս ընծայեն զանոնք լուսանկարներով եւ նմանահանութեամբ, եւ ծանօթացընեն ամբողջ գեղարուեստասէր աշ-խարհի։ Հարկ է լոյս հանել ամէն նկար, ծաղ-կեզարդ որ հին է եւ քանի դեռ չեն եղծուած, որչափ ալ չնչին կարծուի անոնց արժէքը եւ արհամարհելի։ Առանց տարակուսի մանաւանդ Տփղիսն պիտի ըլլայ հարուստ՝ Յովնաթանեանց նկարներով[1], որոնք զա՛յն ընտրած էին իրենց

[1] "Պատմում են որ նկարիչ Յովնաթանը անցել է եւ Պարսկաստան՝ Շահի պալատը նկարազարդելու եւ ճա-նապարհին Ներքին-Ագուլիսի եկեղեցու պատի վրայ նկար է թողել յիշատակ։ Ասում են Թիֆլիզում էլ կան նրա նկարներից„ կը գրէ Պ. Յովհ. Թումանեան ՀՈՐԻԶՈՆԻ մէջ (Թ. 90)։

Այս աւանդութիւնը ի հարկէ կարելի է նաեւ Նա-ղաշ Յովնաթանի համար առնուլ. անուանց եւ արուեստ-ներու նոյնութիւնը շատ դիւրաւ կրնար շփոթութիւն յա-ռաջ բերել։

*գործունէութեան միջավայր։ Եւ ո՜րչափ դիւրին է գործելն ի Տփղիս, քան հեռու՝ Հայաստանի ուրիշ խուլ աւերակներու մէջ...։*

*Մենք պիտի աղաչէինք Տփղիսի Հայոց Ազգագրական ընկերութեան, որ նա իր վրայ վերցնէր այս պարտաւորութիւնը եւ տակաւ տակաւ ծանօթացնէր նմանահանութիւններով Տփղիսի եւ շրջակայից գեղարուեստական մնացորդները։*

*Այս ճանապարհով միայն կարելի է յարգել մեր նախնի, գեղարուեստասէր վաստակաւորներու յիշատակը, եւ հայ գեղարուեստի պատմութեան արդէն իսկ աղքատ էջերն հարստացնել։*

* * *

26. *Զվերջացուցած Ցօմխաթանեանց մասին մեր խօսքը, յիշեմ այս տեղ պարագայ մը, որ թերեւս ուշադրութեան անարժան չկարծուի, որչափ ալ անձնական ենթադրութեան վրայ հիմնուած ըլլայ։*

*Վսեմ. Տիգրան խան Քէլէկեան իւր* Collection of Persian and analogous potteries (Paris 1910) *հրատարակութեան ընկերացուցած էր ինքնակաց լուսանկար մը պնակի, որ հայկական ծագում ունի, ինչպէս կանխեցի ըսել այլուր* (ՀԱՆԴ. ԱՄՍ 1911, էջ 314)։ *Այդ*

պնակն (կապտագոյն, 23 սմ. մեծութեամբ). Հետաքրքրական է մանաւանդ այնու, որ գտնուած է ի Կովկաս, եւ կը կրէ Հայկական Մենագրութիւն մը։

Պատկերը կու տամ այս տեղ.



Պնակին վրայ ներկայացուած է ծաղկալից դաշտ մը. աջ կողմը կը տեսնուի եղնիկ մը, որ յետս կը նայի, եւ ձախ կողմը սոխակ մը, թառած, որչափ կ'երեւայ, վարդենւոյ վրայ։ Բու-

սականութիւնը խիտ է մանաւանդ սոխակի շուրջը։

Եղնիկէն քիչ վեր աչքի կը զարնէ մենագրութիւն մը (monogramme), զոր կը լուծեմ՝ ՅԱԿՈԲ, ՌՃՂ(Բ)։

Առ այս ակներեւ են Յ եւ Ո տառերը. Յ տառը կը կիսէ մէջէն վար գիծ մը որ դէպի աջ կը շեղի եւ կ'երթայ հանգոյց կապելով կրկին կը բարձրանայ նախ դէպի աջ շեղ եւ ապա ուղղաձիգ՝ կազմելով “Ա„։ Այբի ձախակողմեան թեւը յինքեան կու տայ միեւնոյն ժամանակ շղագիր “Կ„ մը եւ աջ թեւը՝ “Բ„, որով կը ստանանք ՅԱԿՈԲ։

Այբի աջակողմեան թեւին վրայ կայ ուրիշ փակագրութիւն մ'ալ, զոր կարելի է լուծել՝ առանց դժուարութեան ՌՃՂ(Բ)։ Թէ այս տեղ թուական մը ներկայացուած է, կը վկայէ յայտնապէս վերը գրուած պատիւը։ Միայն կարելի է խնդիր ընել թէ այս թուականիս կից կարդալո՞ւ է նաեւ “Բ„ մը, որ ուրոյն պաշտօն մ'ունէր արդէն։

Եթէ շնորհուի այս լուծման հաւանութիւն, այն ատեն ակամայ պիտի տեսնենք մենագրութեանս մէջ յայտնի արուեստագէտ Յակոբ Նաղաշի անունը, որուն գործունէութեան ասպարէզն էր Կովկասը — 1740ի շրջանին։

Բայց պնակին նկարազարդութիւնը փոքր ինչ դժուարութիւն կը յարուցանէ հոս, ուր չի տեսնուիր ճարտար ձեռք մը, ինչպէս կը յուսացուէր Յակոբէն։ Սակայն այս պարագան կարելի ըլլայ թերեւս մեղմել այնու որ անծանօթ է մեզի անոր արուեստին կատարելութիւնը եւ ճաշակը, հետեւաբար մերժելու բաւական հիմ կը պակսի։

# ԱԶԳԱՅԻՆ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ

Ա. *Գալէմքեարեան Հ. Գր. Վ.* Ուսումնասիրութիւնք Լեհահայոց դատաստանագրոյն: 1. Պիշոֆ Լեհահայոց հին իրաւունքը :2. Գոշէր, Իրաւունք Հայոց : 1890 : Էջ 85+59 : Փր. 1.25

Բ. *Մէնէվիշեան Հ. Գ.*, Ազգաբանութիւն ազն. զարմին Տիւզեանց: 1880: Էջ 50: Փր. 1.—

Գ. *Տաշեան Հ. Յ.*, Ագաթանգեղոս առ Գէորգայ ասորի եպիսկոպոսին եւ ուսումնասիրութիւն Ագաթանգեղեայ գրոց: 1891: Էջ ԺԱ+159: Փր. 1.25

Դ. *Տան Դ.*, Արեւելեան Հայք ի Պուքովինա: Թրգմ. Հ. Գ. Վ. Գալէմքեարեան: 1891: Էջ 79: Փր. —.85

Ե. *Տաշեան Հ. Յ. Վ.*, Ուսումնասիրութիւնք Ստոյն-Կալիսթենեայ Վարուց Աղեքսանդրի: 1892: Էջ Դ+272: Փր. 3.—

Զ. *Տրվլէ Ա. եւ Գ. Փիսոն*. Ուղեւորութիւն ի Փոքր Ասիա: Թրգմ. Հ. Յ. Վ. Տաշեան: 1892: Էջ 82: Փր. 1.—

Է. *Մառ Ն.*, Ամառնային ուղեւորութիւնից դէպ ի Հայս: Թրգմ. Ո. Անոփեան: 1892: 89: Փր. 1.25

Ը. *Գարիէր Ա.*, Նորագոյն աղբերք Մովսիսի Խորենացւոյ: Հտ. Ա.: Թրգմ. Հ. Յ. Վ. Տաշեան: 1893: Էջ Ժ+51. Փր. 1.—

Թ. *Գալէմքեարեան Հ. Գ. Վ.*, Պատմութիւն հայ-լրագրութեան: Հտր. Ա. 1794—1860: (1 լուսանկարով:) 1893: Էջ 232: Փր. 2.50

Ժ. *Կոնիբիր Փր. Կ.*, Քննութիւնք գրոց Դաւթի Անյաղթի: Թրգմ. եւ յաւ. Հ. Յ. Վ. Տաշեան: 1893: Էջ Ը+92: Փր. 1.25

ԺԱ. Գովրիկեան Հ. Գ. Վ., Հայք յՕղիսաբեթուպոլիս Դրանսիլուանիոյ 1680—1779: (1 զըն-կատիպ.) 1893: Էջ Ժ+533: Ֆր. 4.50

ԺԲ. Խալաթեան Գր., Զենոբ Գլակ. Համեմատական ուսումնասիրութիւն: 1893: Էջ Ձ+78: Ֆր. 1.—

ԺԳ. Տէր-Մովսիսեան Փ., Հայ գիւղական տունը: Թրգմ. Հ. Բ. Վ. Պիլէզիկճեան: (6 տախտ. 55 պատկ.:) 1894: Էջ Ը+103: Ֆր. 2.—

ԺԴ. Գարիէր Ա., Նորագոյն աղբերք Մովսիսի Խորենացւոյ. Հտր. Բ. կամ Յաւելուած: Թրգմ. Հ. Յ. Վ. Տաշեան: 1894: 8° Էջ ԺԱ+43: Ֆր. 1.—

ԺԵ. Տաշեան Հ. Յ. Վ., Ուսումնասիրութիւնք հայերէն փոխառեալ բառից: Ա.՝ Հ. Հիւպշման, Սեմական փոխառեալ բառեր հին հայերէնի մէջ: Բ.՝ Փրոբէլ-ման Կ., Յունական փոխառեալ բառեր հայերէնի մէջ: Գ.՝ Հ. Հիւպշման, Հայկական Յատուկ անուանք: 1894: Էջ Թ+145: Ֆր. 2.—

ԺԶ. Տաշեան Հ. Յ. Վ., Մատենագրական Մանր Ուսումնասիրութիւնք. Մասն Ա: Ա–Զ. Նեմեսիոս, Պրոկղ Դիադոխոս, Խոսրովիկ, Գիրք Հերձուածոց, Պրոկղ եւ Սեկունդոս: 1895: Էջ ԺԲ+296· Ֆր. 3.60

ԺԷ. Տաշեան Հ. Յ. Վ., Հայկական աշխատսիրութիւնք հայագէտ Պ. Փէթթէրի, ամփոփուած եւ թարգմ. ծանօթութեամբք: 1895: Էջ Թ+202: Ֆր. 2.50

ԺԸ. Տիւրեան Կ., Սեւ ծովու ռուսական եզերքը: 1895: Էջ 92: Ֆր. 2.—

ԺԹ. Գովրիկեան Հ. Գ. Վ., Դրանսիլուանիոյ Հայոց Մետրապոլիսը կամ Նկարագիր Գերլա Հայաքաղաքի ի գիր եւ ի պատկերս: 1896: Էջ Թ+352: Ֆր. 3.60

Ի. Տաշեան Հ. Յ. Վ., “Վարդապետութիւն առաքելոց„ անվաւերական կանոնաց մատեանը. Թուղթ Յակոբայ առ Կոդրատոս եւ Կանոնք Թադդէի: 1896: Էջ Թ+442: Ֆր. 6.—

ԻԱ. Տոմաշէկ Վ., Սասուն եւ Տիգրիսի աղբերաց սահմանները: Պատմական եւ տեղագրական հե-

տազօտութիւն: Թրգմ. Հ. Բ. Միլէզիկճեան: 1896: Էջ Է+62: Փր. 1.—

ԻԲ. Կարրիէր Ա., Աբգարու գրոյցը Մովսէս Խորենացւոյ Պատմութեան մէջ: Թրգմ. Հ. Գ. Վ. Մէնէվիշեան: 1897: Էջ ԺՆ+107: Փր. 1.50

ԻԳ. Յովճաննեան Հ. Ղ. Վ., Հետազօտութիւնք նախնեաց ուղղագրութեան վրայ: Ուսումնասիրութիւնք եւ քաղուածներ: Մասն Ա. Ուղղագրութեան մատենագրութիւնք: Տետր Ա: 1897: Էջ Ը+272: Փր. 4.—

ԻԴ. Յովճաննեան Հ. Ղ. Վ., Հետազօտութիւնք նախնեաց ուղղագրութեան եւն: Տետր Բ: 1897: Էջ Ա—Ը: 273—522: Փր. 3.—

ԻԵ. Գէլցէր Հ., Համառօտ պատմութիւն Հայոց: Թրգմ. Հ. Գր. Վ. Գալէմքեարեան: Յաւելուածք 1. Ցանկ Հայոց կոտորածներու առթիւ լոյս տեսած գրքերու: 2. Գաւազանագիրք Կաթողիկոսաց եւ Պատրիարքաց Հայոց: 1897: Էջ Ը+130: Փր. 1.50

ԻԶ. Մէնէվիշեան Հ. Գ. Վ., Գիրք (կամ՝ յօդուած) գրելու արուեստը: Յաւելուած՝ Գիրք կարդալու արուեստը: 1898: Էջ Է+118: Փր. 1.25

ԻԷ. Խալաթեան Գր., Մ. Խորենացւու նորագոյն աղբիւրների մասին քննադատական ուսումնասիրութիւնք: 1898: Էջ Է+53: Փր. 1.—

ԻԸ. Տաշեան Հ. Յ. Վ., Ակնարկ մը Հայ Տնագրութեան վրայ: Ուսումնասիրութիւն Հայոց գրչութեան արուեստին: (10 զնկատիպ պատկերով:) 1898: Էջ ԺԱ+202: Փր. 2.50

ԻԹ. Դաղբաշեան Յ., Փ. Բիւզանդացի եւ իւր պատմութեան խարդախողը: Քննութիւնն Մ. Խորենացւու աղբիւրների մասին: 1898: Էջ Թ+175: Փր. 2.50

Լ. Մսերեանց Լ., Հայերէն բարբառախօսութիւն: Թրգմ. ի ռուսերէնէ Հ. Գ. Վ. Մէնէվիշեան: 1899: Էջ Է+26: Փր. —.50

ԼԱ. Քօսեան Հ. Յ. Վ., Հայք ի Զմիւռնիա եւ ի շրջակայս: Հատոր Ա. Զմիւռնիա եւ Հայք. (պատկերազարդ:) 1899: Էջ ԺԲ+369: Փր. 5.—

ԼԲ. Քօսեան Հ. Յ. Վ., Հայք ի Զմիւռնիա եւ ի շրջակայս: Հատոր Բ. Զմիւռնիոյ վիճակին գլխաւոր քաղաքներն եւ Հայք. (պատկերազարդ:) 1899: Էջ Ժ+161: Փր. 2.50

ԼԳ. Գովրիկեան Հ. Գ. Վ., Հայք յԵղիսաբեթուպոլիս Դրանսիլուանիոյ. Բ. Հտր. 1780—1825: 1899: Էջ Է+554: Փր. 5.—

ԼԴ. Գազանճեան Յ., Եւդոկիոյ Հայոց գաւառաբարբառը: 1899: Էջ Է+120: Փր. 1.—

ԼԵ. Կարրիէր Ա., Հեթանոս Հայաստանի ութ մեհեանները Ագաթանգեղոսի եւ Մ. Խորենացւոյ համեմատ: Թրգմ. Հ. Յ. Վ. Տաշեան (1 քարտէզով): 1899: Էջ 43: Փր. —.70

ԼԶ. Տաշեան Հ. Յ. Վ., Ժողովածոյք առակաց Վարդանայ, ըստ Ն. Մառի, տեղեկատուութիւն եւ քաղուածքներ: 1900: Էջ ԺԱ+193: Փր. 2.50

ԼԷ. Տաշեան Հ. Յ. Վ., Մատենագրական Մանր Ուսումնասիրութիւնք· (տես ԺԶ:) Մասն Բ: Է—Ժ. Խիկար եւ իւր իմաստութիւնն, Ագապետոս եւ իւր Յորդորականք առ Յուստինիանոս, Թղթակցութիւն Աբգարու եւ Քրիստոսի ըստ նորագիւտ արձանագրութեան Եփեսոսի, եւ Գէորգայ Պիսիդեայ Վեցօրեայք: 1901: Էջ ԺԲ+384: Փր. 4.50

ԼԸ. Տէր-Պօղոսեան Գր., Նկատողութիւններ Փաւստոսի Պատմութեան վերաբերեալ: 1901: Էջ Ը+110: Փր. 1.50

ԼԹ. Վէբէր Ս., Արարատը Ս. Գրոց մէջ: Թրգմ. Հ. Բ. Պիլէզիկճեան: 1901: Էջ Ե+77: Փր. 1.—

Խ. Սանտալճեան Յովսէփ Վ., Ասորեստանեայ եւ Պարսիկ սեպագիր արձանագրութիւնք կամ որոնք Նաիրի-Ուրարտու աշխարհին պատմութեան կը վերաբերին: 1901: Էջ 262: Փր. 4.50

ԽԱ. Խաչաթեանց Բագրատ, Հայ ժողովրդական դիւցազնական վէպը: 1903: Էջ Ը+72 Փր. 1.—

ԽԲ. Մէնէվիշեան Հ. Գ. Վ., Արդի լեզուագիտութիւնը: Հտր Ա.: 1903: Էջ Ը+204: Փր. 3.—

ԽԳ. Մարկուարտ Յ., Հայ Բդեաշխք: Թրգմ. Հ. Թ. Կէտիկեան: 1903: Էջ 39: Փր. —.75

ԽԴ. Գեյցեր Հ., Սկզբնաւորութիւնք Բիւզանդեան քանակաթեմերու դրութեան (1 քարտէզով): Թրգմ. Հ. Գ. Գարանֆիլեան: 1903: Էջ Է+83: Փր. 2.—

ԽԵ. Կիւլէսէրեան Բ. Վ., Ծովք, Ծովք-Տլուք եւ Հռոմ-Կլայ, պատմական եւ տեղագրական ուսումնասիրութիւն: 1904: Էջ Ը+117: Փր. 1.50

ԽԶ. Կիւլէսէրեան Բ. Վ., Կոլոտ Յովհաննէս Պատրիարք. պատմագրական եւ քննասիրական ուսումնասիրութիւն: 1904: Էջ ԺԴ+227: Փր. 3.50

ԽԷ. Պեդերսըն Հ., Նպաստ մը հայ. լեզուի պատմութեան: Թրգմ. Հ. Գ. Գարանֆիլեան: 1904: Էջ Ը+87: Փր. 1.25

ԽԸ. Տէր-Մկրտչեան Գ. եւ Աճառեան Հ. Յ., Քննութիւն եւ համեմատութիւն Եզնկայ Նորագիւտ ձեռագրին: 1904: Էջ Է+105: Փր. 1.50

ԽԹ. Գովրիկեան Հ. Գ. Վ., Հայք յԵղիսաբեթուպոլիս: Գ. Հտր. 1825–1904: Էջ Ժ+658: Փր. 7.—

Ծ. Տորբէք Մ., Հայաստան, Քրդաստան եւ արեւմտեան Պարսկաստան բաբելական-ասորեստանեայ սեպագրերու համաձայն: Թրգմ. Հ. Բ. Պիլէզիկճեան: 1904: Էջ Ի+222: Փր. 3.—

ԾԱ. Խալաթեանց Գր., Հայ Արշակունիք ըստ Մովս. Խորենացւոյ, կամ Նոր ուսումնասիրութիւններ Մովս. Խորենացւոյ մասին: Թրգմ. Արսէն, Ս. Սիմոնեանց: 1906: Էջ Ը+124: Փր. 1.50

ԾԲ. Պեդերսըն Հ., Հայերէն եւ դրացի լեզուները: Թրգմ. Հ. Թ. Կէտիկեան: 1907: Էջ ԺԱ+257: Փր. 5.—

ԾԳ. Հիւբշման Հ., Հին Հայոց տեղւոյ անունները: Թրգմ. Հ. Բ. Պիլէզիկճեան: 1907: Էջ ԺԶ+443: Փր. 7.—

ԾԴ. Պեդերսըն Հ., Հին հայերէնի ցուցական դերանունները: Թրգմ. Հ. Յ. Տաշեան: 1907: Էջ Է+90: Փր. 2.—

ԾԵ. Գալէմքեարեան Հ. Գ. Վ., Կենսագրութիւն Սարգիս Արքեպիսկոպոսի Սարաֆեան եւ ժամանակին հայ կաթողիկեայք: 1908: Էջ ԺԳ+433: Փր. 5.—

ԾԶ. Աճառեան Հ., Հայերէն նոր բառեր նորագիւտ Մնացորդաց գրոց մէջ: 1908: Էջ 38: Ֆր. —.60

ԾԷ. Կիւլէսէրեան Բ. Ծ. Վ., Եղիշէ, քննական ուսումնասիրութիւն: 1909: Էջ ԻԸ+458: Ֆր. 7.—

ԾԸ¹. Ակինեան Հ. Ն., Տիմոթէոս Կուզ հայ մատենագրութեան մէջ: Էջ 1—60:

ԾԸ². Աճառեան Հր., Հայերէն նոր բառեր Տիմոթէոս Կուզի Հակաճառութեան մէջ: 1909: Էջ 61—106: Ֆր. 1.50

ԾԹ. Ակինեան Հ. Ն., Զաքարիա Եպ. Գնունեաց եւ իւր տաղերը: 1909: Էջ ԺԲ+87: Ֆր. 1.—

Կ. Ակինեան Հ. Ն., Կիւրիոն Կաթողիկոս Վրաց: 1910: Էջ ԻԷ+315: Ֆր. 5.—

ԿԱ. Մէնէվիշեան Հ. Գ. Ծ. Վ., Հայերէն լեզուի ուղղագրութեան խնդիրը: 1910: Էջ 73: Ֆր. 1.—

ԿԲ. Գիւտէրբոք Կ., Բիւզանդիոն եւ Պարսկաստան եւ անոնց դիւանագիտական եւ ազգային-իրաւական յարաբերութիւնները Յուստինիանու ժամանակ: Թրգմ. Հ. Հ. Համբարեան: 1911: Էջ Ը+162: Ֆր. 2.50

ԿԳ. Սամուէլեան Խ., Մխիթար Գօշի Դատաստանագիրքն ու հին Հայոց քաղաքացիական իրաւունքը: 1911: Էջ ԺԲ+344: Ֆր. 5.—

ԿԴ. Առաքելեան Հ., Պարսկաստանի Հայերը, նրանց անցեալը, ներկան եւ ապագան: Ա. 1911: Էջ Ը+97: Ֆր. 1.50

ԿԵ¹. Յովնանեան Հ. Ղ. Վ., Միջնադարեան ազգային տաղաչափութիւն ռամկախառն. էջ 1–48:

ԿԵ². Ակինեան Հ. Ն., Յովնաթան Նաղաշ եւ Նաղաշ Յովնաթանեանք եւ իրենց բանաստեղծական եւ նկարչական աշխատութիւնք: 1911. Էջ 49–117: Ֆր. 1.50

---